# Առաջաբան

Մոտ յոթ տարի առաջ մի գրքի պատճեն ստացա, որ ինձ շատ կարմացրեց, թե ինչպես մինչև հիմա երբեէ դրա անունը չեմ լսել, Լինելով միշտ հետաքրքրված վաղնջական լեզուներով, ինչպիսին են Ավեստայի լեզուն, պահլավերենը կամ սանսկրիտը, և քննելով տարբեր երկրներում հրատարակված հոծ գրականություն այդ լեզուների մասին՝ ինձ առավել զարմացրեց այն հանգամանքը, որ հայ լեզվաբանության մեջ մի հպանցիկ ակնարկ անգամ չկա *Peter Jensen*–ի և նրա աշխատության մասին: Որոշեցի թարգմանել 110 տարի առաջ լույս տեսած այս գիրքը և ձեռնամուխ եղա մի գործի, որ շատ ու շատ ավելի բարդ էր, քան թվում էր ինձ, բայց քանզի նախաձեռնողը էի, որ ինչ գնով էլ լինի, պիտի թարգմանեմ ու ավարտին հասցնեմ այն, արդյունքը եղավ այս գիրքը, որի թերությունների ու բացերի համար բոլոր բանասերներից ներողամտություն եմ հայցում:

*Peter Jensen*-ը եղել է Ավստրիայի և Գերմանիայի ակադեմիաների բարձրաստիճան անդամ, հիանալի տիրապետել է աքադերենին, ասորերենին, հունարենին ու եգիպտերենին, չմոռանանք նշելու՝ նաև հայերենին, ինչպես այս գրքում ևս նկատելի է, Նա ի մի է բերել հնագույն բոլոր պատմական ու վաղեմի կրոնների առնչությունները, քննարկել պատմական անձնանուններն ու դիցանունները Հին Ասորիքից մինչև Լիբանան ու Հունաստան, կատարել է մեջբերումներ Ստրաբոնի ու Բսենոֆոնի աշխատություններից՝ բարեխղճորեն համեմատելով ու քննարկելով մյուս պատմական աղբյուրները, ինչը հիանալի, զերապանցապես ընդօրինակելի և ակնածանք առաջացնող երևույթ է: Այս գիրքը գրված է ոչ միայն գիտական պատշաճ ոճով, այլև անկանխակալությամբ և բարյացակամությամբ, ինչը միանգամայն հարիր է այդ մակարդակի գիտնականին:

Նկատի ունենալով այն հանգամանքը, որ նրա ժամանակ այսօրվա գիտական հարուստ ու առատ “հումքը” գոյություն չուներ, և ընդհանրապես լեզվաբանության այս ոլորտը անգամ մինչ օրս էլ ըստ ամենայնի դեռևս չի հետազոտվել իր ողջ խորությամբ, այնուամենայնիվ նա տարբեր լեզուների լեզվական իրողությունների համեմատությամբ, քննությամբ ու համակողմանի ուսումնասիրությամբ ուրվագծել է այդ լեզուների պատմական զարգացման ընթացքը և տրամաբանություն է ներմուծել իր դատողություն-ներում: Ու չնայած այսօր հիշյալ աշխատությունը որոշ առումով հնացած է, և նրա այլևայլ դրույթներ չեն կարող համոզիչ թվալ, բայց և այնպես այս ծանրակշիռ ուսումնասիրությունը իր մեթոդով, հարցադրումներով և ուշագրավ եզրահանգումներով արդարացնում է իրեն, և նրա թարգմանությունը այժմեական ու հրամայական է դառնում:

Տարիներ շարունակ լսում ենք հայոց լեզվի պատմությանն առնչվող բազմաթիվ տեսակետներ, որոնցից շատերը գիտական մոտեցումից հեռու կամ ընդհանրապես տրամաբանորեն հակադիր են միմյանց:

Այս գիրքը, որ անհայտ կամ, ավելի շուտ, թաքնված էր հայ բանասերից, պարունակում է գիտական նուրբ վերլուծություններ, ինչը կարող է հիմք ծառայել լեզվաբանական որևէ հարց լուծելու կամ ուսուցանելու համար:

Հուսով ենք, որ սա մի կարևոր խթան կդառնա հաթերենի (հիթիթերենի) նկատմամբ նոր մոտեցման և իրապեկման ոլորտում:

Վահագն Խաչատրյան

2012, նոյեմբեր

## Նախնական նկատառումներ

### Նախաբան

Արդեն հինգ տարուց ավելի է, որ ես սկսել եմ խորանալ  հաթական արձանագրությունների մեջ և հասկացել եմ, որ գիտական հետաքրքրություններս առավելապես կապվելու են դրանց հետ: Այն օրերին մի երեկո համկարծ մտաբերեցի գաղափարագրերի խմբի արձանագրություններում կիլիկիական մի թագավորի անվան ընթերցումը՝ *Syennesi(s)*, և միաժամանակ գաղափարագրերի մի ուրիշ խմբում՝ *Tarsus*-ի անվանումը: Դրա մոտավոր ընթերցմամբ հիթիթական »–ես« բաղադրիչի փոխարեն հնագույն շրջանի հայերենի *as*–ը մտքիս եկավ և հավաստի համարելով այն՝  հայտնեցի այն ժամանակ համդուզն երևացող կարծիք, որ հիթիթական արձանագրությունների լեզուն այժմյան հայերենի նախամայրը կամ մեծ մայրը պիտի լինի:

Մի քանի շաբաթից ամբողջ լրջությամբ հնագույն շրջանի հայերենի մասին որոշ դատողություններ համարձակվեցի հրապարակել *Zeitschr. f. Assurologi-I VII*–ում և *Theol. Literaturzeitung*–ում, ըստ որի՝ *Hem(a)tar (?)-b(p)ii(s)*-ը պիտի նշանակի »Համաթի թագավորը«, *Tarsirsira*-ն՝ »Տարսուսի թագավորը«՝ *as(i,e)* »–ես« և *(a, e)s(i)mi* բաղադրիչներով: Բայց այն փաստը, որ այս դիտարկումները ոչ մի հնդգերմանական լեզվաբանի չկարողացավ ոգևորել, մեկ չպիտի այդքան արտասովոր թվար, և եթե իմ ստուգաբանությունները այդքան անկատար էին, չէր կարելի ինձ հանդիմանել: Սակայն իմ հայեցակետի նկատմամբ մերժողական վերաբերմունքը շարունակվում էր, մինչդեռ հայտնի է, որ յուրաքանչյուր վերծանում իր ճանապարհին հանդիպում է խոչ ու խութերի, հատկապես մեր դեպքում, երբ գործ ունեինք մի խրթին գրահամակարգի արձանագրությունների և անծանոթ լեզվի հետ,  և չկար որևէ տեսություն, որով առաջնորդվեինք, ուստի ընթացել ենք առավելապես ենթադրութ-

յունների ուղիով՝ աշխատելով ընկալել ու ճանաչելի դարձնել ծխապատ մշուշով քողարկված լեզվական այս կամ այն անհայտ իրողությունը: Համենայն դեպս հակված եմ կարծելու, թե իմ առաջին վերծանումները իրենց մեջ պարունակում էին մի հաստատուն ու հավաստի կորիզ:

Ակնկալելով, որ պիտի դիմագրավեի եգիպտական գաղափարագրերի, տարալեզու սեպագրերի և արձանագրությունների վերծանման դժվարությունը և համոզված լինելով, որ իմ այդ առաջին ընթերցումները միայն մասամբ կարող էին ճիշտ լինել, վերոհիշյալ գիտական ժողովածունե-րում մի կարճ հաղորդում հրապարակեցի, որ մասնագետ ընկերներին կամ ավելի ճիշտ՝ հետաքրքրվողներին, քանզի »մասնագետ ընկեր«, բացի իմ ընկեր *RECKENDORF*-ից, այսօր չեմ կարող որևէ մեկին անվանել, իմ վերծանություններն ակնառու կերպով ներկայացնեի: Կարծում եմ՝ ճիշտ վարվեցի, քանի որ դրանից մեկուկես տարի հետո *Zeitschrift der Deutschen Morgenland. Geselsch.*-ի *48*–րդ հատորում ներկայացրի իմ ուսումնասիրություն–ների արդյունքների մի մասը: Հավատացած էի, որ մեր կատարած հետազոտությունները գոհացուցիչ ավարտի ենք հասցրել, քանի որ բոլոր իրական դժվարությունները հաղթահարված էին, արձանագրությունների ժամանակաբանությունը՝ առնվազն մոտավորապես որոշված, գրային համակարգը՝ հիմնականում սերտված, ձայնային բովան–դակությունը՝ ճշգրտված; անունների մի մեծ քանակ՝ վերծանված, միաժամա-նակ մի շարք բառեր՝ ստուգաբանված:

Երկու տարի կասկածների մեջ անցկացրի՝ հուսալով, որ մարդկային պատմության առնվազն մի նոր, ոչ շատ անկարևոր գլուխ եմ թերթել: Շնորհիվ լարված ու տքնաջան մտավոր աշխատանքի՝ վերջապես կարողացա հաղթահարել իմ առջև անընդհատ ծառացող նորանոր խնդիրներն ու դժվարությունները՝ նկատի ունենալով այն հանգամանքը, որ ոչ միշտ է միտքը բավական աշխուժությամբ բողբոջ տալիս, որ ինձ երկար տանջող մտածմունքներից ապատեր; և երբեմն ինձ էր բերում մի նոր հիասթափեցնող խնդիր՝ մի դավադիր ու չնախատեսված արգելքով, որն ամեն դեպքում անգամ հաղթահարած խոչընդոտների հետևում է թաքնված՝ խնդրի լուծման

բանալին գտնելուց առաջ գրեթե միշտ իմ և իմ աշխատանքի նկատմամբ կասկած առաջացնելով: Այժմ իմ գործի հիմնական մասը արդեն կատարված է. ես հավատացած եմ, որ իմ առջև դրված խնդիրը լիովին կատարել եմ: Այն, ինչ արբեցման առաջին պահից միգուցե թեթևամտությամբ փաստում էի, իրեն, ինչպես կարծում էի, գերապանց կերպով արդարացրեց: Իրականում ես երկար ժամանակ դեռ այնքան շատ չգիտեի, ինչքան հիմա գիտեմ; բայց այնուամենայնիվ կարծում էի (արդարև, առանց դա հայտարարելու), որ հիթիթերենի առնչությունը հայերենին որպես անհերքելի իրողություն նկատելը և իմ եզրահանգումների արդյունքներին լեզվաբանների համաձայնելը ինքնըստինքյան հասկանալի ու ընդունելի պիտի համարեի ու սպասեի դեպքերի հետագա զարգացմանը:

Բայց այս հույսը շուտով պիտի խոր հիասթափության վերածվեր:

Իրականում անարդարացի կլիներ, եթե պահանջեի, որ հնդեվր-մանագետների մի ամբողջ շարան այս գործին լծվի և դրա մասին մի կարծիք արտահայտի, Չգիտեմ՝ ինչու, միայն ասորագետ կոչված բոլոր քննադատներիս, որ զարմանալի կերպով յուրայիններս էին, անկանխակա-լությունը վերացավ, և նրանք չկարողացան իրենց գործընկերոջ նկատմամբ արդար գտնվել, Նրանք ավելի եռանդուն էին քննադատում, քան որևէ մի ուրիշ խմբակցության լեզվաբանները Չի կարելի առաջնորդվել միայն այն տեսակետով, որ հաթական գիրը ևս, ըստ ասորագետների և եգիպտագետ-ների, անհաղորդակցելի է, ինչպես որևէ խճճված ու բարդ կառույց: Հետաքրքրության սակավության համար ընդհանրապես ես չէի բողոքի, բայց կարող էի թերևս հուսալ, որ խնդրի դժվարությունից ելնելով՝ դրա առթիվ դատողություն աներ նա, ով առնվազն մեկ անգամ ուշադրությամբ իմ աշխատանքը թերթած կամ լրջորեն ուսումնասիրած, էլ չեմ ասում՝ գոնե մինչև վերջ կարդացած լիներ:

Բայց մի ուրիշ բան պատահեց:

Մի ասորագետ կորեն, ջախջախիչ դատավճիռ կայացրեց իմ աշխատանքի դեմ: Դա »Հիմարություն սկզբից մինչ ավարտը« պիտակավորած և իր օլիմպիական

բաղձունքում միայնակ մնացած մի լեզվաբան էր, որի դատողությունները զուրկ են գիտականությունից, ինչի հետևանքով իմ գիտական մեթոդը սրամտություն է համարվել: Սակայն նա չի բավարարվել քչով, այս դեպքում՝ հանրահայտ բացառություններով և սխալներով: Ոչ ոք մեր շրջապատում չի կարողացել իմ աշխատանքը գիտական փաստարկներով հերքել, բայց և այնպես այն պատշաճ գործ չի համարվել: Նկատենք, սակայն, որ վերծանությունների բնագավառում համարձակությամբ խորամուխ են եղել միայն մի քանի լրջմիտ գիտնականներ, որոնք իմ համախոհներն էին: Ես կարող եմ երկար խոսել, թե ինչ կերպ այդ քմահաճները, որ այս ոլորտում որևէ կարծիք արտահայտելու դեռևս անընդունակ էին, իմ աշխատանքը կարդացած չլինելով հանդերձ, գործից զլուխ էին հանել, մինչդեռ բոլոր գիտակներից, արհեստավարժներից և այս հարցով հետաքրքրվող ուսյալներից ոչ մեկը չկարևորեց իմ աշխատանքը՝ իրապես լրջորեն ուսումնասիրելով այն: Միակ մարդը, որ անվարան ձեռնարկեց այդ գործին և դրանով վերծանությունների հարցում մի քանի առումով ինձ սատարեց, ինքնատիպ ու անկողմնակալ արաբագետ RECKENDORF–ն էր (*Zeitschrift f. assyriologie XI, 1 ff.).* բայց դա կարելի էր համարել «ձայն բարբառոյ յանապատի»: Նրա գիտական այդ քայլը մնաց առանց նկատելի արդյունքի. և ես չէի կարող հուսալ, որ արտերկրում այն ավելի աշխույժ և բարենպաստ քննարկմամբ կամ անգամ իմ գործի արդյունքների ճանաչմամբ կավարտվի: Սակայն կային այս հարցով առանձնակի հետաքրքրվողներ և մասնակիցներ՝ հաղթանակի ավարին տիրելու համար: Սպասման հարցում ես շատ չհուսահատվեցի: Սահմանի մյուս կողմում թերևս ավելի բարեհաճ էին՝ հակառակ այստեղի քննադատների խորտակիչ գործելաոճի, որոնք, տարբեր միջոցներ կիրառելով, չէին խուսափում, այնուամենայնիվ, իմ դեմ հրապարակային պայքարից՝ առանց որևէ մտահոգության, թե ով կարող է ավելի ծանր վիրավորել:

Առաջին համարձակը *HALEVVY*–ն էր, որը համենայնդեպս մի անարդյունք վերծանության փորձ էր կատարել և հենց այդ պատճառով, բնականաբար, չէր կարող պարզ ու անկեղծ ուրախությամբ ինձ ողջունել: Ժնևի արևելագետների կոնգրեսը նա

համարեց մի  հարմար առիթ՝ իմ գիտական դիտարկումները քննադատելու համար: Ես չեմ մոռացել այն բոլորը, ինչ ասաց HALEVVY-ն իր կեսժամանոց ճառի մեջ հակառակ ինձ, բայց դեռ հիշում եմ, որ նա այնպիսի դատողություններ արտահայտեց, որ ինձ պարզապես ապշեցրին, քանի որ նրա երկար ու ձիգ ճառում իմ վերծանությունների էության նվազագույն մասն անգամ չշոշափվեց, բայց նրա խոսքը վարձատրվեց բուռն ծափահարությամբ: Ծափահարության արժանացավ համենայն–դեպս իմ պատասխանը ևս. արդյոք այդ գիտնականները գիտեի՞ն,  թե ում և ինչու են ծափահարում:

Երբ  մի տեղ՝ *Academy*–ի մի խմբագրությունում, իմ աշխատանքի վերաբերյալ առիթ ներկայացավ  զեկուցում կարդալու, որի մեջ (և *Academy*-ին չպիտի մեղադրել) Sayce–ական »decipherments-ը և «PREISER–ական »entzifferungen«–ը շարադրված էին որպես մի զարմանալի համակցություն,  դրա առթիվ նույն շաբաթաթերթում (1894 թ. հոկտեմբեր) անխոնջ *Feder Sayce*–ից տպագրվեց մի հոդված, ինչը նա և նրա հետևորդները իբր որպես քննադատություն էին ներկայացրել: *Sayce*–ի այսպես կոչված քննադատությունը առաջինն էր, որ իմ երեսին պարզվեց: Իսկ երբ *Academy*–ի խմբագրությունն իմ պատասխանի համար իր հանդեսի էջերում տեղ հատկացրեց, նույն շաբաթաթերթի դեկտեմբերի 1-ի համարում հանդես եկան բարձրագույն գովասանքի արժանի և անկողմնակալ երկու անգլիացի գործընկերներ, որոնք, առաջնորդվելով արդարամտությամբ և անկանխակալությամբ, իմ քննադատների դեմ առճակատում ստեղծեցին:

*Sayce*–ը պատիվ ուներ անգլիացի լինելու. և դա պաշտպանում էր նրան անաչառ և բացեիբաց քննադատություններից, բայց ես համարձակություն էի ունեցել նրա արտատիպը *Academy*- ում ձեռք բերելու և մի գերմանական թերթում նրան ու նրա այսպես կոչված քննադատությունը նշանակալից  ձևով կարգի  հրավիրելու և դատելու այնպես, ինչպես  իրեն արժանի էր, համենայն դեպս շատ քաղաքակիրթ ձևով, այնպես որ *Academy*-ն դրան համաձայնեց: Կարծում եմ՝ իմ դիմակայումը նրան

շատ չէր ոգևորել Այժմ *Sayce*–ի տեսությամբ հետաքրքրվողներին պատվիրում եմ պատրաստ լինել. ես կուզեի ընդարձակ մանրամասներով իմ դիտարկումները նրանց տրամադրել:

Հոգին լուսավորվի…

Այդ ժամանակվանից *Sayce*–ի ճակատագիրը որոշված էր։ Մի արձանագրությունում, որ ես իբրև հավելված *Zeitschr. d. Deutschen Morgland. Gesellsch*-ի 48-րդ համարում հրապարակել էի, չգիտեի, որ *Ordasu* - ի Առյուծի ողսի արձանագրությունը Մալաթիայի մոտակայքում է, և *Sayce*–ը իր »քննադատություն«–ում, որ ըստ իմ վերծանության հիմնորոշման էր հրապարակել, պարմանալիորեն չէր կարողացել անգամ Մալաթիայի հին անունը գտնել և գրում էր, որ անգամ այս արձանագրությունում *(MASPERO's Recueil de Travaux XVIII, 111 ff.*–ի հիմնորոշման ներքո) նույն վերծանության արդյունքում, բացի ճշտված անուններից և հարևան երկիր *Kommagene*–ի անվանումից, առաջինը ասորական արձանագրություններում անվանված »հիթիթական« թագավորներին պիտի վերագտնեի։ Անգամ այս արձանա–գրությունը, որպես ժամանակագրական հերթականություն, առաջինը ես հաստա–տել կարողացա, և այդ նույն արձանագրությամբ միաժամանակ կարողացա նոր արձանագրությունների հայկականության հարցում անվիճելի ապացույցներ ներկայացնել: Ավելին՝ այս արձանագրությունը ինձ համար մի տեղ հայթայթեց *Sargon*–ի տարեգիրների մեջ, ինչպես դա WINCKLER–ն էր բացահայտել. Չնայած ոչ շատ վստահելի, բայց և այնպես մի իրական պատճեն Փարիզում վավերացնում է իմ վարկածը։ Ըստ սեպագրերի, ինչպես այս արձանագրություններում է վկայվում, *Kommagene*-ի *Mutalu*-ն *Sargon*-ի օրոք և*ս Melitene*–ին է պատկանել:

*Sayce*–ի այսպես ասած քննադատությունը չէր կարող առանց հետևողությու մնալ: Ես ամենայն լրջությամբ հավատացած էի, որ *HALEVVY*–ի գիտաբանավեճը Ժնևի արևելագետների կոնգրեսում միայն մի ակնթարթային ընկրկում է. բայց նրա խոսքը այն ժամանակ մեծ տպավորություն թողեց, չնայած քիչ էր կշռադատված և զուրկ էր գիտական հավաստիությունից: Բայց *HALEVVY*–ն հեշտությամբ մոռանում է մի բան, ինչը մի ժամանակ ինքն էր փաստարկում. Կոնգրեսի փաստաթղթերում (*բաժին III,* էջ

69 *ff.*) պահպանվում է նրա մի հոդվածը, որ նրա բանավոր զեկուցումը կամ առնվազն կրկնված դասախոսությունն է՝ *lu et relu* (էջ 69. այնուամենայնիվ, դրա ուսումնասի– րությունը նպատակահարմար կլիներ), որ հիմնված է իմ աշխատանքի վրա և կազմված ընդամենը երեք էջից, երբ իր ցեկուցումը կոնգրեսում ամբողջ կես ժամ ցբաղեցրեց: Թվում է՝ HALEVVY–ի միտքը անցած տարվա ընթացքում կծկված պիտի լինի. և այն, ինչ որ դրանից մնացել է և այս քննադատության մեջ արտացոլվել է, համապատասխանում է գործածված նսեմացուցիչ մեթոդնե–րին, բայց դեռ ավելի բարձր աստիճանի, քան *Sayce*–ական քննարկումները: Միայն թե, փառք Աստծու, սուսկ պատմական հարցերով: Ուրեմն ինչո՞ւ դրա վրա թուղթ ու ժամանակ վատնել: Եթե ես HALEVVY–ական քննադատությունը այնուհանդերձ ոչ լիարժեքորեն անտեսեի, այդպիսով HALEVVY–ին չէի կարողանա բացատրություն տալ, քանզի ես դրա կարիքն այլևս չունեի, դեռ ավելին. նրա հակառակ՝ կբողոքարկեի: Այնքան միամիտ է բանականությունը նրա քննարկումներում, որ անօգուտ չի լինի դրանց արվեստ անվանել, ինչպես նա է իմ գիտական աշխատանքը իր ընթերցողներին որպես հարձակման թիրախ ներկայացնում:

HALEVVY–ն իր քննադատությունում, օ. հ. էջ 71–ում, փաստում է, որ ես հաթական ավանդության, այսպես ասած, երկլեզվյա *Tarkondemos*-ը այսպես եմ թարգմանել. »X-ը Erme-ից, թագավորը, թագավորը«. ցերեկվա պես պարզ է, որ սա անհեթեթություն է. և այսպիսի մի թարգմանություն ունենալով հանդերձ՝ HALEVVY–ն համենայնդեպս ցանկանում էր իմ ծավալուն թարգման–չական փորձերի բոլոր մեջբերումները մերժել՝ կարծելով, որ այսպիսի մի թարգմանությունով թարգմանիչը դատապարտվեց: Միայն թե դա ինձնից չի ծագել, այլ հենց իրենից՝ HALEVVY–ից: Իմ թարգմանությունը հնչում էր այսպես. »X, Erme-ից թագավորը, թագավորը« HALEVVY–ն հանգում է նս մի եզրակացության, որտեղ ճգնում է ապացուցել, թե ես ծիծաղելի եմ մի շշմեցուցիչ պարզ ձևով՝ անփույթ տեղը փոխված ատրակետի պատճառով: HALEVVY–ն դեռ չի կարողացել փաստել, որ ես տկարամիտ եմ Եթե նա ինձ մոտ կարդացած լիներ, թե ինչ է տպագրության տալու, ես ընդամենը կուղղեի

կետադրական վրիպակը և կնկատեի, որ սա բառացիորեն մի նոր տեսակի մեղադրանք է: *HALEVVY*–ն Կոնգրեսին այնպես իմ թարգմանությունը ներկայացրեց, որ կարծես թե ես եմ այն տպագրության համաձնել, և թե ինչպես նա իր կրկնված ընթերցման (*Lu et relu*; սա իր սեփական խոսքն է) ժամանակ ատորակետը մի ուրիշ տեղ գտնել կարողացավ, ինձ համար մինչ այսօր պարզ չէ:

Իր հպանցիկ մակերեսայնությամբ հայտնի *HALEVVY*–ական քննադատութ–յունը, սակայն, շատերի համար է պարզ, ուստի դա ոչ որքի այնքան էլ չի կարողանում զրգռել Միայն թե պիտի պարմանալ, որ նա, ի լրումն դրա, մի փաստարկում բերեց, որը ինձ կարող էր կործանել, քանզի այն իրականությունը հակառակ ու շրջված է ցույց տալիս:

Փուլ առ փուլ առաջադիմող իմ վերջին հետազոտությունների արդյունքների, որոնց անտրամաբանության զյուտը *HALEVVY*–ին էր վերապահված, թվում էին հետևյալ դրույթները.

Կա մի նշան՝ Կիլիկիա; մի գաղափարագրախումբ (ոչ այն, որ *HALEVVY*–ն է փաստել ուպում, այլ մի ուրիշ նշան), քաղաք *Karkemis* (ոչ այն, որ *HALEVVY*–ն է պնդում, այլ *Jerabis*-ը) է նշանակում; և որ »թագավոր« *śi (e) – ra (o)s* (ոչ այնպես, որ *HALEVVY*–ն է փաստել ուպում, այսինքն ՝*Sieraos*) է կոչվում:

Այս եզրահանգումներին անդրադարձել եմ իմ աշխատության նախաբանում, որը իմ վերծանության գործի ընթացքի հետ ոչ մի կապակցություն չունի: Ի՞նչ է ասանում *HALEVVY*–ն սրանից, Նա տեղեկացնում է իր անփորձ ընթերցողներին, որ այս ապշեցուցիչ *մերկացումները*, ինչպես նա միշտ ցանկանում է անվանել, ապագայում ուրիշ “վերծանափորձությունների” համար հիմք կծառայեն: Սակայն սրանք ոչ թե *մերկացումներ* էին, այլ բանական եզրահանգումներ՝ մանրակրկիտ աշխատանքիս վերջնական արդյունքը: Այս քննադատությունը այնպիսի մի յուրահատուկ խառնաշ–փոթություն առաջացրեց, որ իմ տաժանակիր աշխատանքը քննարկությունից պիտի վրկեր: *HALEVVY*–ն, որի համար գիտական քրտնաջան պրպտումները արժեք չունեն, տիրապետում է զեղմաներենին և չի կարող իր քննադատության պատասխանատ–վությունը բացարկել: Նա պետք է ակնկալեր, որ սրանից ելնելով՝ մի կարծիք հենց իր

մասին կարոտահայտեմ, այն է՝ դժվար է երևակայելի, որ գիտությանն այսպես ծառայած մեկը գիտակցաբար իրականությունն ու բանաստեղծությունը գիտության մեջ շփոթի ու խառնի, ուստի ինձ ուրիշ բան չի մնում, բացի ընդունելուց այն փաստարկը, որ նրա մոտ կրկնված թեման՝ *lu et relu*, ոչ այլ ինչ է, քան մասնագետների հետազոտությունների նախնական արդյունքները նսեմացնելով կամ բացասելով՝ գիտության մեջ խառնաշփոթ և իրարանցում ստեղծել՝ փոխանակ դրանք ճշտելու կամ հիմնավորելու և գնահատելու, ինչը հարիր է իսկական մտավորականին:

Սրանք են իմ դատավորները…

Նրանց քննադատությունները վերաբերում են այս գրքիս լույս ընծայմանը, ենթադրաբար՝ անցյալին: Հարցնում են, թե ինչու նրանց չեմ լռեցնում. ես պատասխանում եմ. "Քանի որ նրանք համարձակություն ունեցան առաջին անգամ քննադատել, բնականաբար չեն խուսափի իմ այս նոր աշխատանքի հաջողությունն իրենց անխոհեմ ու անփույթ դատավճիռներով կրկին կասեցնել": Հիմա է հասկացվում, թե նրանք ինչ դավադրություն էին նյութում:

Միգուցե այս անցած տարիներին դեռ բավական բան չեմ սովորել և այս գրքի միջոցով աշխատել եմ մի բեկում առաջացնել նրանց դատողություններում, որոնց ինչ-որ չափով հետաքրքրում ու վերաբերում է իմ աշխատասիրությունը: Բայց իմ վերծանությունները թերևս մի արգելքի են հանդիպում. Դեռևս մի քանի տարի առաջ հասկացա, որ իմ վերծանությունների փորձերի հանդեպ անկանխակալ, անաչառ և նպաստավոր կարծիք ստեղծելու հույսով և իմ առաջին հոդվածի ձեռքբերումների ու հրապարակած արդյունքների հավաստիությունը ապացուցելու համար անհրաժեշտ է աշխատանքի շարունակական ուսումնասիրություն, լուրջ քննարկումներ և գիտական բարեհաճ բանավեճեր: Բայց դա ամեն մարդու գործ չէր, և դժվարություններից վախենալով՝ լեզվաբաններն ուղղակի դա հաշվի չեն առնում և ընկրկում են: Այսօր կարծում եմ՝ իրավունք ունեմ ասելու, որ գործի արդյունքներն ուղղակիորեն նրանց պիտի համոզած լինեին, որ դրանք իրենց արդարացնում են:

Ինչ վերաբերում է արձանագրությունների բացատրություններին, համոզված եմ, որ կարևոր է փաստի ճշգրտությունը, որի շնորհիվ ես, նույն արտահայտությունը ամենուրեք, անընդհատ, ավելի երկար կտրվածքներով կրկնելով, մի անառարկելի արդյունքի եմ հասնում. և դա սխալ բացատրությամբ աներևակայելի է:

Իսկ ինչ վերաբերում է արձանագրությունները վերծանելուն, բավական է որպես ընդհանուր հավաստի փաստ ընդունել, որ անունների խմբերը, որոնց վրա դա հիմնավորվել է, ըստ իմ բացատրության, ընդհանուր անուններին համապատասխա– նեն, որոնք արձանագրությունների պեղած ու գտած վայրի և կոթողի հետ պատշաճ կամ ուղղակի և միայն այնտեղ սպասելի կարող էին լինել; և որ իմ ընթերցումներն ու բացատրություններն ընդհանուր միասնականությամբ, երկուստեք մանրակրկիտ, անթերի և ամենակատարյալ ձևով ստուգվեն, ըստ որի՝ նույն հնչյուններն ամեն մի երկու անունում, ըստ իմ հետևությունների՝ սրանց համապատասխանող նշանների խմբին կամ միշտ նույն հնչյունին պիտի համապատասխանեն: Նշանակում է՝ նման տեսակի բաղաձայնները նույնությամբ են գրվում. դրանք վերահաստատվում են հատկապես: Օրինակ՝ մի բառախումբ *Hamāt*-ի համար (գրվում է (ʾ–*m*) *Hamat* (–(?)ť), կամ *Syennesi(s)* գրվում է *S´*-ʾ- *n*–*ś*, *Karkemis* (գրվում է սեռական հոլովաձևում՝ *Kar(i ?)gamiá(-(i)ḱ-m), Melidia-Melitene* (գրվում է սեռական հոլովաձևում՝ *M(e)l-ť),* *Hāti* (մի անգամ գրված սեռականում՝ *Hātiá(-ť)* և վանկային խմբերով *Hātio*- ի համար (գրվում է *H(a)ť (-ť)-á)* և այլն: Բառախմբերը *Karkemis*-ի համար (գրվում են, ինչպես վերը նկատվեց, սեռական հոլովաձևով՝ *Kar(i ?)gamiá(-ḱ-mi)*: Կիլիկիայի համար (գրվում է սեռականում *Khilikia (-i(?)ḱ)* և այլն), *Hamat*-ի համար, ինչպես նաև մեկ թագավորի անուն՝ *TAR-BI-BI –u-aš-ši-mi*; *Markaš* կամ *Gurgum*-ի համար (գրվում է սեռականում *M(a)r + X*, կամ *ḱ(u)r + X).* այդպես նաև *Tarsus*-ի համար (գրվում է *T'(a)r-ś* և *T´ar- ś-(á)r(-);* որտեղ *(á)r*-ը հասկացվում է որպես սեռական վերջածանց *T´(a)r*-ը երկու բառերում՝ *st´r* = հայերեն *ustr* = »ուստր, որդի« և *ωatirā* = հայերեն *vayr*=»վայր, երկիր, տեղ«–ը և X–ը համապատասխանորեն որպես Y + մի հնչյունային լրացուցիչ տարր, Gurgum-ի կամ Maraš-ի առաջին բառախմբում փոփոխվում է. նույնը և միգուցե *Kommagene* կամ

կոմագենացի (գրվում է *K´m - mḱ-i*) և *Hamāt* ու *Kargemiš*-ում անգամ առաջին նշանը խմբում *Kommagene*-ի համար *Jerabis I, 3-* ում; որպես հնչյունային լրացուցիչ տարր՝ *Melidia- Melitene* և մեկն էլ *Hamāt*-ից և *Kargemiš*- ի խմբերից ստացած նշան ունի m –ի համար: Կրկին մեկական՝ *Melidia – Melitene - Hamāt*-ի, ինչպես և *Hati*-ի և *Hatio*-ի (Կիլիկիայինը, Քարքամեշինը, Տարսուսինը), *Gurgum –* ի կամ *Maraš*–ի, *Syennesis*-ի, Տարսուսի և *Hamāt*-ի, արքայանուն *TAR-BI-BI –u-aš-ši-mi*-ի, *Kargemiš*- ի, *Hati*-ի, *Hatio*-ի և *Hamāt*- ի, ինչպես նաև *Melidia- Melitene*–ի համար: Կարծում եմ՝ ավելին այս մեծամիտները չպիտի պահանջեն՝ առանց հայկականության օգնության կանչելու. ես, դիցանունները օգտագործելով, Կիլիկիայի անուններով կարողացել եմ գաղափարագիր *ṕ(á)*-ի հնչյունային արժեքները որոշել: Այս հնչյունները ամրագրել եմ, միաժամանակ ճշտել *ś*–ի և *r*–ի իմ ընթերցումները՝ յուրաքանչյուրը մի նշանով, և գտել, որ այս երկուսը միասին *śr*-ով կապվում են մի հաթական բառ՝ համարժեք թագավորին (ի դեպ, Կապադովկիայի մանրադրամների վրա *dsari*–ն, բացի երևույթին, մի բառ է՝ թագավոր նշանակությամբ կամ դրան հավասար մի բան): Այնպես որ այսուհետև, օրինակի համար, *ś* և *r* նշանի համար հնչյունային արժեքը չորս՝ իրարից անկախ մեթոդներով վավերացրել եմ՝ առանց իմ հայերենի՝ այժմ փաստարկված վարկածը արձանագրությունների ընթերցման ընթացքում որևէ ազդեցության տեղի տալու:

Տարբեր նշանների հնչյունային արժեքների՝ իրար չխանգարելու հանգամանքը բազմահնչյունայնությունը առնվազն մի քանի նշանի կամ նույն հնչյունի ընթերցման ճշտությունը ընդունելի է դարձնում, և դա կարող է լրացուցիչ ապացույց լինել իմ ընթերցման ճշգրտության հարցում:

Կան դեպքեր էլ, երբ, բացի իմ եզրահանգումների, հաճախակի կրկնվող գաղափարագիրը մի պարզ հնչյունային արժեք է ունենում, և հակառակը:

Այսուհետև հնարավոր է՝ նույն մարդիկ, որոնք մինչ հիմա ամբարտավա-նությամբ քիթ էին կնճռոտում՝ աշխատելով այդ հարցում վճռական դառնալ մի

արհեստավարժ թերահավատությամբ և ինքնահավան կեղծավորությամբ, դեռ հիմա էլ կարող են ճիգ թափել՝ գործիս հաղթանակը կասեցնելու համար:

Կարիք չկա անիրական թափառուն ուրվականներ հայտնաբերելու կամ փաստելու, որ իմ ընթերցումները իմ բացատրությունների վրա են հիմնված, քանզի հենց իրենք դա կհաստատեն:

Ինչպես և պիտի ակնկալեի, մինչ այս միանգամայն նշանակելի վերծանություն-ները ավելի լայն ծավալով են ապացուցել արձանագրությունների հայկականութ-յունը: Այն ժամանակ իմ համոզմունքը դրա առթիվ բավական էր, որ ինչը ես վստահորեն կարդալ և թարգմանել էի ցանկանում, առանց բացառության նույն նշանակությամբ հայերենում առկա է, ուստի ընդհանուր պատկերը ցույց է տալիս, որ այս համապատասխանությունները հայերենում նախապատմական ժամանակից եկած պիտի լինեին, այնպես որ այսպիսի նշանակալից կշռով բազմացած համեմատական նյութերը այսուհետև ավելի քիչ "հուսալի" մասնագետներից թերևս մի քանի կողմնակից կարող են ձեռք բերել, Մի լեզվում, որտեղ *t'-i-i-ն (պրոտասանվում է dei)* մի հոմանիշ է թագավոր բառի համար, *(')-) ś-t´-r* »որդի« կամ »պավակ« է նշանակում, ś–ն + որևէ շփական հնչյուն, բացի *m* + *t´-r*-ն »երկիր« է նշանակում, *m-ś*՝ »մեծն« *'-ś–* »ես«, *i - »ես եմ«* – կարիք չկա ձայնավորներ գրելու,և այդպիսի մի լեզու կարող է հայերենին հարազատ լինել. օրինակ՝ *tēr* *(dē + ar* =մարդ) = »տեր«–ից և *tikin* (*dē* + *gin*= տիկին) = »տիրուհի«, *ustr* = »որդի, ուստր« = վաղեմի *t*՛*sutro (t*՛*sudro) ksudro*-ից= *ḫšudra* = այսինքն՝ »պարմ« Ավեստայում, և ինչպես սպասելի է, դուստր = »դուստր« –ի՞ց է արդյոք առաջացել. *Zav-a-k* = »սերունդ«, »պավակ«, *vayr* = »տեղ« և »վայր«, *mets* = »մեծ«, *es* = »ես« և *em* = »(ես) եմ«–ը մեկ ծանոթ բոլոր լեզուներից միայն հայերենում է առկա: Իմ կատարած հետազոտությունների եզրահանգումը, որ հիթիթերենը ավելի տարրական հին հայերենն է, միանգամայն ճիշտ է. քանզի, ի հետևանս դրանց փոխհարաբերության, հայերենի հնչյունային կանոններով կարգա-վորվելով՝ բացառվում է պատահականության "ամենակարող" լինելու հանգամանքը, անգամ եթե մեկը դեռևս դրանց կապակցությունը ժխտել ցանկանա:

Կարևոր է նաև այն հանգամանքը, որ բոլոր գաղափարագրերի հնչյունային ընթերցումը, որոնց մեջ նախնական տեսքը դեռևս հստակ կարող ենք ճանաչել, համապատասխանում է հայերենի մի բառի կամ բառամասի, որը նկարագրում է այդ պատկերի արտահայտած գաղափարը։ Ավելացնեմ, որ ասորական թագավորների արձանագրությունների հին անուններում համեմատաբար ավելի քիչ են նմանություն-ները։ Այս լեզվի կրողները անկասկած ու դեռ ամենայն հավանականությամբ, այսպես ասած, հաթական գրեր էին գործածում, որոնցով պահպանվել են մասամբ ավելի նոր կիլիկիա–կան անձնանուններ հունահռոմեական ժամանակների՝ մի կողմից և հին հայերենի՝ մյուս կողմից, որոնք բացմապատիկ հարաբերութ–յուններ են հիշատակում, և որոնց մեջ կապակցված երևում են անգամ ավելի հին անուններ, որոնց կրողները մեր արձանագրություն-ների ազգին պատկանե–լություն կարող են ունենալ:

Այսպես. *Sura-s(ś)e(i,a)r (Palestina, Phonicien kam Syrien, շուրջ 1400; p. 127)*-ը համապատասխանում է մի կողմից՝ »հիթիթական« արքայանուն *Mɯrз-sзrз*-ի և նրա որդի *Ḫtз-sзrз*-ի անուններին *(Ramses II*-ի ժամանակ – շուրջ *1300*-ին) և *Kзɯï-sïз*-ի անվանը հենց նույն ժամանակվանից. *Surr*-ին (*Patin*–ի թագավորը Հյուսիսային Սիրիայում *Salmanassar* II ժամանակվանից; *860-825*; *p. 113 f.*) և կիլիկիական դիցանուն *Σουρ– βη–ς* –ին, մյուս կողմից՝ հայկական անուն *Sur-ik* = Սուրիկ–ին; անվան երկրորդ մասը հավանական կերպով հայերեն *ser* = սիրող (*ինչպես մարդա–սեր*). *Śu(w)ar-dat-a(-u(m))* և *U(Y)aš-data (շուրջ 1400 էջ 125 f.)* պարունակում են որպես երկրորդ տարր *dat-a*-ն, որը հունարեն *δατος* և արիական *dāta* բարդված անձնանունների երկրորդ բաղադրիչն է հիշեցնում և հայերենում *dato-s* տեսքով գոյություն է ունեցած եղել: *Uaš* կամ *Yas*-ը, անգամ եթե հնդեվրոպական *Uas* կամ *Yas* –ին է համապատասխանում, պիտի հայերենում *Ua* կամ *Ya*-ի փոխվի, քանի որ s–ն բառավերջում շուրջ *1400* թ. դեռ անհետացած չէր: Բայց և այնպես *Ua*-ն, ինչպես և *Ya*-ն առկա են կիլիկիական դիցանունների մեջ, *δατ–ης*-ը՝ որպես երկրորդ տարր կիլիկիական *Μονγδατης, Μονγος, Μουνγος* և այլնի կողքին, և մի վայր՝ *Ουαδατα* – Կապադովկիայում. բնագրերի տեղադրական անբավարարության պատճառով այս

երկու անունները այստեղ են զոնվել, և չի բացառվում, որ *Šuar*–ը *Šuardata*-ում նույնն է, ինչպես *Sura*-ն *Suraser*-ում է ներկայացնում. ճիշտ ինչպես երկու շղթաների օղակները միմյանցով ողպես մեկի՝ ավելի հզորի կշաղկապվեն:

Այնուհետև. հնարավոր է՝ *Тзdзгз*-ն *(շուրջ 1300 թ.)* կիլիկիական դիցական անուն է՝ *Τεδι–αϱ–ις*, որտեղ *r*-ն = *aro*, այսինքն՝ »մարդ«. սա հիթիթական արձանագրութ–յուններում մի աստծու անվան և մի հայկական անձնանվան հետ կապակցվելով՝ ստեղծում է *Tir-ayr* = »մարդն աստծու« բառաձևը (*ayr*–ը *aro*–ն է ներկայացնում):

Շարունակենք. *Kund(t)-a-špi*-ն *(Kommagene*–ի թագավորը *Salmanassar II*-ի ժամանակներում, 860–825 թթ. մ.թ.ա.) կիլիկիական *Κουνδης* և հայերեն անձնանուն *K'ont'* *(Khonth)*–ն է: Բնականաբար այդպիսի համապատաս–խանություններին չպիտի շատ մեծ նշանակություն տալ. անունները փոխվում են, ինչպես բառային փոխառությունները, և ոչ միայն այն պատճառով, որ հիթիթների և հին հայերի կրոնների միջև մի հարաբերություն է նկատվում:

Վերը հիշատակված նկատառումների կապակցությամբ թերևս օգտակար են բացատրություններ, սակայն պիտի ընդգծել և բարձրաձայնել, որ այժմյան հայերը ոչ թե մեկուսացված, երբեմն ցրված, այլ համախմբված ազգաբնակչություն են, որ մոտիկ և կամ մասամբ նույն բնակավայրերում են նստակյաց ապրել և շարունակում են բնակվել այնտեղ, որտեղ հիթիթական արձանագրություններն են հայտնաբերվել:

Եվ, վերջապես, այսօրվա հայերի ազգային անունը՝ *Hay-k'*-ը, համընկնում է հիթիթների *Hatio* բնիկ անվան հետ, քանզի *Hatio* ձևը, ըստ հայկական հնչյունային կանոնների, պիտի *Hay* դառնար, ինչպես *m-t-r-* հց = արձանագ-րությունների »մայր«–ը. հայերեն՝ մայր, և *w-t-r* = արձանագրությունների »երկիր«–ը հայերենում վայր է դարձել: Երբ տոհմանուն *Hatio*-ի բացահայ-տումը *Zeitschrift d. Deutsche. Morgen. Ges.*-ին պարզեցի, ինձ համար դա միայն մի նախադրյալից ավելին չէր և այն ժամանակ հատկապես մեծ իմաստ չուներ, Պետք է որ մի ուրիշը սկսեր դրանով զբաղվել, որ ես պատեհ կերպով դա որպես ուշադրության արժանի մի իրողություն համարեի, բայց այն, ինչ ես երբևիցե չէի կարող զուշակել, այժմ մի իրողություն է դարձել, որի հետ

ընդունամենայնիվ հաշվի պիտի նստել։ Նկատենք, որ *Hatio* էին կոչում իրենց որպես նվապագույնը, այսպես ասած, հաթերեն արձանագրությունների մեծ մասի և կարևորագույնի սկզբնապատճառ հեղինակները։

Այս ամենից ելնելով՝ այսուհետև կարելի է վստահությամբ եզրահանգել, որ արձանագրությունների հեղինակները հայերի նախահայրերն են եղել։ Արդեն միշտ գիտակից և խելահաս մարդու համար ոչինչ չի մնացել, քան ընկալումով իրականությունը ընդունել կամ ապացուցել այն, որ սովորական տղամաքանությունը իր կանոններով հիթիթների և նրանց ընկերների վրա ոչ մի ազդեցություն չունի։

Գտնում ենք, որ արձանագրությունների հեղինակ ազգին այսուհետև պետք է անվանել իր բուն անունով՝ հաթեր։ Երբ ես նրանց իմ գրքի անվանաթերթի վրա հիթիթներ անվանեցի, դա մի լոհաբերություն էր, որին ես պիտի զնայի, որ ընդհանուրին հասկանալի դառնայի. մի մտավոր լոհաբերություն, ուր հիթիթ և հաթի գաղափարները չեն համընկնում։

Իմ գրքի ընթերցողներին թերևս կարիք չկա դրա մասին պզուշացնելու. նրանք իրապես այս աշխատանքը կուսումնասիրեն։ Մի ծանոթություն, սակայն, իմ անցյալի գործերից »հիթիթների« արձանագրությունների և իմ առաջին հոդվածի մասին Reckendorf-ի քննադատության վերաբերյալ միգուցե ցանկալի լինի. դրանք բացահայտ–ված են *Zeitschr. d. Deutsche Morgen.Ges. 48,* էջ 235 – 352 և 429 – 485–ում; *Maspero*-ի *Recueil XVIII,* էջ *111 – 120*-ում, *Wiener Zeitschrift für die Kunde d. Morgenl. X,* էջ *3 – 20*-ում և այլ գիտական աշխատություններում։

Իմ նախկին գործերը հրատարակվել են այս, ինչպես նաև *Zeitschrift* հանդեսի տարբեր համարներում։ Իսկ եթե այս գրքում թյուրիմացաբար մոռացված են որոշ լեզվաբանների անուններ, որոնց հիմնավորված կամ թերևս վիճելի տեսակետները բացառապես ամբողջությամբ կամ մասամբ իրենց արդարացրել են, վրիպում պետք է համարել։ Մենք չենք կարող համաձայնել մեր գործընկերների հետևյալ դրույթներին. սրածայր գլխարկի բացատրությունը որպես »թագավոր«՝ բառ, այսպես ասած, երկլեզու *Tarkondemos* և *Boghazkoi*-ի դիցանշանների ծանոթագրությունների (Sayce);

արձանագրությունների սկզբում հաճախ պատահող արտահայտությունները՝ նշանակելով »ես« և »եմ« (*MENANT, BALL, HALEVVY*); մեծ մասամբ քանդակի վերին մասի շարքում գտնվող նշանը՝ որպես »խորհուրդ բաժանող« (*PEISER*); *me* (*mi*)–ի նշանը՝ ըստ երկլեզվի (*Sayce;* բայց դրանով միայն փաստելի չէ) և նույնպես *e* (*i*)–ն դրա վերջում (*HALEVVY*; բայց դրանով ևս դա վստահելի չի դառնում):

Գրային աղյուսակներին հետևող նշանների առթիվ հետևյալ նկատառումն ունենք. հարցական նշանների հետ ուղեկցվող և դրա հետ միասին փակագծերի մեջ ներփակված նշանագիրը և նույնությունը կասկածելի են դարձնում նույն շարքի մեջ գտնվող նշանը, մինչդեռ մի պատկերի հետևող փակագծերով ներփակված հարցական նշանը ցույց է տալիս, որ դա անառարկելի չէ և այդ պատճառով երբեմն հենց նոր հիշված նշանագրին է պատկանում.

Երբ իմ գրային աղյուսակը համեմատվում է արձանագրությունների հրատարակությունների հետ, շատ հաճախ զգալի տարբերություններ են նկատվում ու բարձրաձայնվում: Դա բացատրվում են նրանով, որ ես մինչ այժմ հնարավորինս կաղապարված պատճեններով, արտատիպերով և լուսանկարներով եմ աշխատել, մինչդեռ շատ հաճախ արձանագրությունների հրատարակություններում, ուր լուսանկարը չէր օգնում, բնագրից չափազանց անբավարար պատկերացում է ստացվում: Պատրանքն ու կամայականությունը նույնպես *PEISER*–ի ժողովածուում *(Die hetitischen Inschriften)* անպատեհ կերպով տեղ է գտել, այնպես որ նրա հրատարակած բնագրերի հավաստիությունը կասկածելի է: Այն, ինչին անվարժ ձեռքով և համառ աշխատանքով կարելի է հասնել, հավատացած եմ, իմ գրաաղյուսակներում ապահովել եմ. Ավելին չի կարելի ինձնից պահանջել. Իմ գործերի անկատարությանը ևս տեղյակ եմ. բայց ո՞վ կարող է բարելավել իմ գործը. համառոտ քարտեզը գլխավոր շտաբի քարտեզ չէ, Բավական է, որ այն ճշգրիտ է և իր նպատակին ծառայում է:

Երբ վերը ես իմ դժկամությունն արտահայտեցի առաջին աշխատանքիս մասին կազմած կարծիքի վերաբերյալ, շատ անարդարացի կլիներ, որ այստեղ չուղենայի շնորհակալություն հայտնել այն բոլորին, ովքեր միայն մի կարծիք արտահայտելու

համար իմ հետազոտությունները սիրով ընդունեցին և իրենց գործուն մասնակցությամբ կամ շահագրգիռ աջակցությամբ նպաստեցին իմ աշխատանքի հաջողությանը: Բացի պարոն SCHWALLY – ից, որն առիթություն ունեցավ առաջինը մի դրական գրախոսություն գրելու, ես պիտի հականե անվանե երախտագիտությունս հայտնեմ պր. *պրոֆ.* HILPRECHT–ին, որ բազմիցս առիթը չկորցրեց իմ գործի արդյունքի ճշգրտության նկատմամբ համոզմունք պարզելու; պր. *պրոֆ.* NÖLDEKE և պր. *պրոֆ.* JUSTI-ին, ովքեր տարիներ ի վեր անխոնջ կերպով և մեծ պատրաստակամությամբ ինձ ուսուցանել և խորհուրդներ են տվել. Շնորհակալ եմ և Տյառն *պր.* RECKENDORF-ին, որն ինձ և իմ գործին, ամենամեծ կոհաբերությունն է բերել՝ տքնաջան աշխատանքով մի արմատապես շատ օտար ոլորտում իրեն դատողունակ դարձնելու, որ իմ գործի մասին մի վերլուծություն գրել կարողանա:

Այս վերջին երեք պարոնայք իրենց գրավոր դիտողություններով և խմբագրումներով ինձ ջերմաջերմ երախտագիտություն են պարտադրում:

Գիրքը պատրաստվել և տպվել է ինձ համար բարդություններով ու հուզումներով լի մի ժամանակ, երբ դժվար էր կենտրոնանալ, ուստի երախտապարտ եմ իմ գործընկեր WREDE–ին՝ գիրքս սրբագրելու և հիմնական վերանայման ենթարկելու համար, ինչի շնորհիվ վերացել են բազում անճշտություններ և անորոշություններ:

Հարկ է սրտանց շնորհակալություն հայտնել նաև իմ հրատարակչին, որը մարտիրոսաբար իրականացրել է իմ բոլոր ցանկությունները, և դեռ մի բան էլ ավելին. գիրքը շատ գեղեցիկ կարդակազմվել է և կարծես արվեստի մի նմուշ լինի: Հրատարակչական գործի վարպետները, պր. հրատարակչի հետ սիրահոժար համաձայնելով, որ գեղեցկությունը խիստ գնահատելի է, բայց նպատակահարմարությունը՝ առավել ևս, գիրքը լույս ընծայեցին մեծ բարեխղճությամբ և պատշաճ մակարդակով, որի համար հայտնում եմ խորին երախտագիտությունս:

## Հաթեր ու Հայեր

## I

## Հաթ – Հայկի Ժողովուրդն ու երկիրը

Հյուսիսային Սիրիայում ու ավելի հյուսիսում եգիպտացիները, ինչքան մեզ հայտնի է, *Thutmosis* III-ի ժամանակներից՝ մոտավորապես Քրիստոսից 13 դար առաջ, ճանաչում էին մի երկիր՝ Հաթ անունով: Ասորիները, ինչքան գիտենք, 15–րդ դարի վերջերին նույնպես գիտեին մի երկիր՝ Հաթի–Հաթթի անունով, Հին Ուխտի մեջ նախահայկական, այսինքն՝ նախահնդգերմանական Հաթի երկրի՝ Հայաստանի բնակիչներին, հիթթիմ, հիթիթներ են անվանել: Հիմա, երբ *Hama*–ում և Հյուսիսային

Սիրիայի տարբեր մասերում ու այդտեղից դեռ ավելի հյուսիս և ամբողջ Փոքր Ասիայի շրջակայքում գտնվեցին արձանագրություններ՝ մինչև հիմա անծանոթ ու նույն տեսակի գրերով, որոնց լեզվական նույնականությունը դեռ չէր ապացուցվել, ատացվեց, որ գտնողներն սկզբնաղբյուրի որոշման հարցի պատասխանը շատ արագ ձեռք բերեցին: Այդ ժամանակ Հյուսիսային Սիրիայի բնակիչները անվանվեցին հիթիթներ՝ Հաթի-ի երկրից: Արձանագրությունների մի մասի առաջին գտնողներից *W. Wright*-ն ու *Sayce*-ը արձանագրությունների հեղինակին հիթիթներ անվանեցին և անվարան աճապարելով՝ մի մեծ պետություն հորինեցին, որ մի ժամանակ՝ մոտավոր-րապես մինչ շուրջ *1300* թ. մ.թ.ա. (*Ramses* II–ի ժամանակ, երբ Հաթիի թագավոր Հաթեսերեն եգիպտացի թագավորի առաջխաղացումը կասեցրեց), պիտի գոյություն ունենար՝ արձանագրությունները տարածված ողջ երկրով մեկ, որի սահմանները հասնում էին մինչև Փոքր Ասիայի արևմուտք՝ մինչև *Karabel*, հյուսիս՝ մինչև *üyük, հարավ՝ մինչև* Կիլիկիա, այնուհետև դեպի հարավ՝ մինչ Համա, արձանագրություն-ների ամբողջ տարածքով, ու դեռ ավելին: Հիմքերը, որոնց վրա խարսխված է այս տեսությունը, վերը ներկայացված են, և պիտի ընդունել, որ դրանք նվազ համոզիչ չեն: Մինչդեռ ես *Zeitschr. d. D. Morg. Ges. 48 245 f.*- ում շեշտել էի, որ դեռ հին ժամանակներից եգիպտացիներին, ասորիներին և նախահայերին Հաթի երկրանունը προτερορ և դրան առնչվող տոհմանուններն ու գոյականների կապակցություն ունեցող անունները –νστερον է, ուրեմն հիթիթ անունը ազգ չի նշանակում և ավելի շուտ միայն Հաթի երկրի պատկանելության է վերաբերում՝ տարբերություն չունենալով, որ այս սեմական կամ այն ոչ սեմական լիներ, այնպես որ ես այս նոր տեսության հիմնադրույթները գիտականորեն քննարկելու և պատմական փաստերով ապացուցելու կոչ պիտի անեմ:

Հիթիթներին ներկայացնում են Հաթասերեն ու նրա ազգակիցները, որ Եգիպտոսի մեծն *Ramses* II–ի ժամանակակիցն էին և ինչպես հիթիթները՝ նույնպես ասորական արքա *Sargon*–ի ժամանակվա Քարքամեշի թագավորները, Բայց որևէ ապացույց, որ սրանք նույն ազգին էին պատկանում, չի ներկայացվել. Այս անունը մոտավորապես ճիշտ կլիներ, երբ՝

1 - բոլոր արձանագրությունները ամբողջովին մի ազգից են ծագած լինեին.

2 – ապացույց բերված լիներ, որ այս բոլորը ամբողջապես Հաթի երկրի անունով անվանված կամ մի որևէ երկրի անվան վերաբերեր ու ապացուցվեր, որ դրանց հետ այդ երկրի անունը համընկնում է.

3 – փաստեր ներկայացվեին, որ հետազայի բնակիչները նույնպես Հաթի երկրին և իր ազգակիցները այդ ազգին են պատկանում և խոսում են հաթերեն: Այս առումով մինչև հիմա ոչ մի ապացույց չի ներկայացվել, ուստի մնում է համաձայնել, որ որոշ պգույշ մարդիկ այդ անունից (Hatti) խուսափում են:

Լեզվական միասնության բերումով առնվազն բոլոր արձանագրություններում ես բացահայտել եմ, որ կարելի է դրանք տեսնել իմ թարգմանության փորձերում. դրանով առաջին պայմանը կատարյալ է:

Իմ վերծանությունների հենց սկզբում Հայկ անվան կապակցությամբ իմ մեջ միտք առաջացավ, որ գուցե ներկայիս հայերը իրենց նախկին Հաթի երկրում բնակության ժամանակների հուշերն են վերապրում:

Մի հաթեցի, որ Հաթի երկրից է, պիտի հայերենով հաթիո անվանվի, և եթե ներգաղթման ժամանակ Հայաստանում իրենց նախնական ու սկզբնական և դեռ չաղված ու չանհետացած միջձայնավորական t–ն, ըստ հայերենի հնչյունաբանության, փոխվել ու –յ է դարձել, եզրակացրի, որ հայ բառը իր մեջ մի հին հաթիո է պահպանում՝ առանց հուսալու, որ արձանագրությունները դա նույնպես կփաստեն: Այդ ժամանակների իմ յուրաքանչյուր համարձակ սպասում լիարժեքորեն փաստված է. Շատ– շատ թագավորներ իրենց անվանել են X-ի որդի կամ X –ական, պավակը մի X-ական հպորի Այս X-ը ընդհանրապես տարբեր նշաններով է գրվել, ինչը, առանց նկատի առնելու հայկականության իմ զիտական վարկածը, ընդունելի է, երբ վերջին բաղաձայնը *ատամնային* է, և դրան հետևում են ուղղական հոլովով i (կամ e) + a (կամ o, կամ, անգամ, u) հնչյունախմբերը, քանի որ այդ *ատամնայինի* նշանագիրը նույնպես հարմար է *d* – ին՝ *Meli(e)dia – Melitene – Malatya,* հավանական է նաև *t* – ի դեպքում *Hamath* անվան մեջ: Մի այդպիսի բառախմբում անկասկած փոխանակվում է *Hama* - ի չորրորդ արձանագրության չորրորդ շարքում մարդու համար որպես որոշիչ մի

նշանագիր՝ մարդկային գլխի նկարը, որ, ըստ գրերի հեղինակների, ներկայացնում է մարդու լրիվ մարմինը՝ նշանագրին հետևող a–ի (o-ի կամ u?-ի) միջոցով: Դա Ափսեի արձանագրությունում այս տեսակի ատամնայինի համար, որպես ձայնային լրացուցիչ նշանագիր, ապահովում է մեր համեմա–տության ճշտությունը:

Այս պատկերով կարող է միմիայն >>մարդ<< գաղափարը կամ այդ արձանագրության ազգի պատկանող որևէ մեկն արտահայտվել:

Գրերի հեղինակները իրենց արձանագրություններում հաճախ գործածում էին այնպիսի արտահայտություններ, ինչպես >>X, որդին X–ի<←՝ ապահովելով այս X-ի համար զոյականի նշանակությունը, ըստ որում արձանագրող ազգի գոյականների վերջին բաղաձայնը մի *t* (d *կամ* ţ,*կամ, անգամ, մի ուրիշ* ***բաղաձայն,*** մենք այն ժամանակ չգիտեինք) պիտի լիներ: Հիմա, անշուշտ, տարածված է այն անառարկելի կարծիքը, թե իբր արձանագրություններում նշված է, որ իրենց երկրի անունը համընկնում է Հաթի երկրանվանը, բայց դա դեռևս բավական չէ, քանի մենք կփաստարկենք՝ գործածելով ստորև բերվող փարկածը, որ այս գրերի հեղինակները այժմյան հայերի նախնիներն են եղել: Քննենք արձանագ-րություններում հաճախ պատահող մի արտահայտություն՝ "Ձեռքը մի դանակով": Izgin-ի և *Kolitolu*-ի արձանագրություններում վերջին բաղաձայնը՝ ատամնայինը, չկա, և դա այստեղ որպես ձայնային լրացուցիչ է ծառայում, և մենք ըստ այդմ "Ձեռքը դանակով" ամբողջ (նշանա)խումբը կարող ենք իրավացիորեն *Ḫ(h)atio* ՝Հաթ կամ *ḫ(h)t* կարդալ: Արդ, երբ մեր արձանագիրները ամենայն հավանականութ–յամբ իրենց գրերի գյուտարարն են եղել, ապա նրանց գրերի նշանները պիտի իրենց լեզվական տարրերի հետ համահունչ լինեին. և քանի որ "Ձեռքը դանակով" արտահայտությունը նրանց մոտ *ḫ(h)at կամ ḫ(h)t* էր կարդացվում, պիտի "կտրել" բառն էլ ունենային, որը առնվազն *ḫ(h) և մի* ատամնային՝ որպես բառասկզբի բաղաձայն պիտի ունենար, որը հավանաբար *ḫ(h)a* + ատամնայինով էր սկսվում. և հիմա բարեբախտաբար այնպես է ստացվել, որ հայերե–նում »հատանել« բառը hat, ավելի վաղ՝ pad կամ zad արմատից է պահպան–ված, որ նշանակում է >> կտրել <<:

Այնպես որ արձանագրությունների հայկականության մեջ ոչ մի կասկած լինել չի կարող, ուստի հայերենի Hay = Armenier – հայ բառում տվյալ *ḫ(h)at* կարդացվող նշանը և դրան հետևող ձայնավոր նշանը նույնպես շատ պատճառներով համապատասխանորեն *i* ու *o* են պահանջում, ուստի այսուհետև անբեկանելի եմ համարում, որ *ḫ(h)atio*-ն առնվազն արձանագրող ազգի մեծամասնության ցեղանուններից է: Այնուհետև. *ḫ(h)atio կամ* համապատասխանաբար՝ որդին մի *ḫ(h)atio*-ի կամ պարզապես մի *ḫ(h)atio* (ի) անվանում էին իրենց՝

1) *Hamath*-ի թագավորը (*Hama IV*, 1 և 4);

2) *Karkemiš-I* թագավորները (***Jerabis*** I, 5; ***Jerabis*** **II և** այլն, **8**; ***Jerabis*** **III,** 5);

3) Մի թագավոր *Gurgum–Markaš* –ից (Löweninschrift 4 und 6);

4) Մի թագավորի քանդակ *Izgin ( Albistan) ( Col. III 4 ff. ; IV, 4);*

*5)* Մի գրություն Կիլիկիայից (*Schaleninschrift*) և

6) Մի արձանագրություն *Kölitolu* - Լիկոնիայից, հավանաբար՝ մի թագավոր Կիլիկիայից (2-րդ և 3-րդ շարքից) և վերջապես հավանաբար՝

7) Նաև *Beiköi*- ի գրությունների հեղինակները Հին Փրյուգիայում:

Համենայն դեպս միայն միևնույն լեզվի նշանագրերով շարադրողներն էին իրենց անվանում  հաթեր, և այսօրվա հայերի անունը դրանից է առաջա–ցել, այնպես որ այսուհետև այս արձանագրությունների հեղինակներին՝ որպես ամենահարմար բնորոշողը, >>հաթեր<< կառաջարկեմ. և դրանից ելնելով՝ ստորև այս գրությունները հաթական  կանվանեմ: Արդյո՞ք նաև *Hatio-Arme-nier*-ի համար երկրի անունը ազգի անունը և ոչ թե հակառակը՝ ազգի անունը երկրի անունն է հաստատում. այս  հարցի լուծումը ստորև կներկայացնենք:

Շատ թագավորների արձանագրություններում հիշատակված են իրենց փոխհարաբերությունները Կիլիկիայի հետ, և դրանցից շատերի մեջ նրանք իրենց անվանել են կիլիկիացի. Hamat *I*-ի արձանագրության  երրորդ տողում՝ թերևս Կիլիկիայի թագավորներ, Համայի V (IV) տողում թագավորը անվանվել է կամ X Կիլիկիայից, կամ, ենթադրաբար, կիլիկիացի, Մարաշի Առյուծի արձանագրության

տող 1f.–ում, ինչպես նաև  Կոմագենի և Մելիտենի Մութալուի տող 1-ում՝ >>կիլիկիացի<<: Կիլիկիան առնվազն նշված է Մարաշ II և III, տող 1–ում,  *Izgin*- ի (*Albistan*) (Col III, 19 ու IV, 2) և մի արձանագրության մեջ *Palanga*-ից (երրորդ շարքում)՝ առանց փաստելու կամ հավանականություն ունենալու, թե այս գրերը Կիլիկայի թագավորներից են ծագել կամ առաջացել: Նկատենք, որ կիլիկիացի կամ Կիլիկիա անունը, *Jerabis*-ի (հին Կարկամիշի մարզի) անհամար գրություններում չկա: Ինչպե՞ս է հարաբերվում կիլիկիացի ազգանվանումը հիթիթ ազգանվանման հետ, որի՞ ծավալը կամ ընդգրկումն էր ավելի հեռուն տարածվում: Արդեն հենց նոր շոշափված հանգամանքը, որ ոչ մի տեղ *Jerabis*-ում, ուր մենք համեմատաբար մեծաքանակ կոթողներ ունենք, Կիլիկիայի առթիվ ոչ մի ակնարկ չկա (շատ վատ պահված *Boghazkoi*-ի գրություններով, բնականաբար, ոչինչ չենք կարող փաստել), որ սովորաբար  մեծ արձանագրություններում չի պակասում, մնում է միայն ենթադրել, որ մարդ կարող է հիթիթ լինել՝ առանց կիլիկիացի լինելու, որ Կիլիկիան է Հաթիի մի մասը եղել և ոչ  հակառակը: Ահա, ինչպես տեսանք, ստանում ենք մարդկային գլուխը՝ գրերի հեղինակ ազգի կերպարանքով, որ կիլիկիացիների մեհենագիրը չէ, այլ հիթիթներինը, և Կիլիկիայի և ուրիշ թագավորներն են դրանք գործածել: Եթե մի ազգի ներկայացուցիչները իրենց գերմանացի և վյուրթենբերգցի են համարում, կնշանակի՝ նրանք գերմանացի են և ոչ վյուրթենբերգցի, քանի որ Վյուրթենբերգը Գերմանիայի մի մասն է և ոչ հակառակը։ Ճիշտ նույնպես կիլիկիացիները հիթիթների մի մասն են։

Միանգամայն անկասկած է, որ արձանագրությունների հեղինակները իրենց հիթիթ էին անվանում, այնպես որ դժվար չէ երկրի անվան պատկանելությունը փաստարկել: *Fraktin*-ում գտնվում է ձախում “երկրի” ու թագավորի և աջում “երկրի ու մթ(ա)ր=մայր–ի միջև մի գաղափարագիր, որը իր դիրքավոր–մամբ թագավորի ու երկրի միջև հավանաբար մի երկրանուն (թերևս մի երկրի կամ մի թագավորի) և m-t(a)r-ին պատկանող ածական է բնորոշում:

*Բուլգարմադեն* 2-ում հանդիպում ենք այս գաղափարագիրը մի երկրան–վան մեջ *սեռական* հոլովում (*Arz(s)auia*?) և *m-̇-(å)r(-)* ենթադրաբար՝ *imia* = >>հյուր<< կամ

>>կողեղ<< ← նշանակությամբ, և սա միշտ լինում է մի բառից առաջ, որը նշանակում է »տիրապետող« կամ նմանատիպ մի բառ՝ իր հետ ունենալով մի նախընթաց ածական, իմիջիայլոց որպես երկրանվան սեռական հոլովաձև կամ  սեռական հոլովումով ածական: Իսկ  Կնիքի գրությունում հանդիպում է (*Siegelinschrift, 2 – 4-ը XVI* Սալիկի աղյուսակում և *WRIGHT-* ի *Empire of the Hittites- ում)  t' í í* (= տէյ) >>տեր<< բառը, որը թագավորների տիտղոսն էր, և նույնպես բացահայտում է նրանց հարաբերությունն իրենց երկրին:

*Andaval-* ի արձանագրության առաջին տողում գտնվում է *ś-r* = König = >>թագավոր<< բառը, ուր մենք, ըստ համանման եզրահանգման, մի երկրի կամ քաղաքի անուն ենթադրելով, կարծում ենք, որ այս նշանագիրը որպես  ատամնային հնչյուն պիտի դիտվի, իսկ  երբ *i*-ն  ( կամ *e*-ն)  դրվում է *ś-r-* ից  հետո,  չպիտի կարդացվի. այդ դեպքում այն պիտի վերջակետ համարվի:

Այժմ մեկ ոչ մի երկրի կամ քաղաքի անուն, որպես բաղաձայն միայն մի ատամնային ունենալով, այդ տարածքի երկրամասերում ճանաչված չէ, այնպես որ պիտի ենթադրենք, որ այդ  նշանը մյուս նշանների հետ միասին քաղաքի կամ երկրի անվան է պատկանում, և դա սեռական հոլովի դեպքում *ti* կամ *di-* ով է վերջավորվում. հիմա այդ շրջաններից այդպիսի երկրանուն, և դեռ ավելին՝  կարևոր քաղաքի անուն, բացի *Hatti*-ից,  մեկ չի հասել, և  անկասկած, մենք կարող ենք իրավացիորեն ընդունել, որ այս քննարկված նշանը և դրան պատկանող գաղափարագիրը *t*-ն և իր ձայնային լրացուցիչն *i-* ն է:

Մի սեռական հոլով, որի  վերջավորությունը *i* է կամ իր վերջում մի *i* է պարունակում, համապատասխանում է “հաթերի երկրին”՝ որպես ուղղականից վերցված ձև, որտեղ *Hã(a)ti(i)* = ավելի հին, ոչ հայկական *Ḫãtē* –ին Ընթերցման այս տարբերակը, ըստ *Bulgarmaden*-ի, գերազանց-ապես հարմար է թագավորին, որն իր իշխանության տարածքը մինչև *Mele(i)dia*-ն՝ հյուսիսում, *Menua*-ն՝ հարավում, Կիլիկիան՝ արևմուտքում և *Arz(s)aua-* ն՝ արևելքում հիշատակելով,   մեծ *Ḫ(H)ãtē* – ն (*Տիշենք Մեծ Հայքը ավելի նոր Հայաստանում*) մեջտեղում է հիմնավորել, ինչը

անվերապահորեն համահունչ է *Fraktin*–ի արձանագրություններին, ուր աստված–ների տերը՝ *Ḫ(H)ãtē(i)-ի* թագավորը, և մեծամայրը կամ մեծն տիրամայրը *Ḫ(H)ãtē(i)*-ի տիրամայրն է կոչվել:

Այսպիսով, *Ḫ(H)*ãtē*(i)*-ն հիթիթների երկիրն է, և *Hamat* I, II, III ու IV արձանագրությունների առաջին տողում տվյալ ՛-ն՝ >> պատվի<< նշանի առջևում երևացող նշանագիրը, չի կարող հիշատակված *Ḫ(H)ãtē*- ին խանգարել:

Ինչպե՞ս էր արտասանվում այդ երկրանունը տարբեր տեղերում: Ըստ եգիպտական գրությունների՝ *Ḫtз*-ը *թույլ է տալիս* բառի հնչյունայնայնութ–յունը որոշել, երբ *t*-ից հետո *a* կամ *e* է հաջորդում: Հնագույն եգիպտերենը ինչքա՛ն շատ է ինձ փաստում, որ գրվածները օտար անունից են փոխառվել, որ *1400* թ. մ.թ.ա. *El amarna*-ից ասորեններով գրված եգիպտական նամակները ցույց են տալիս, որ *1400*–ին ասորեններում երկիրը *Ḫata* կամ *Ḫatta* էինասում, որը փոխվում է սեռական հոլովում *Ḫatti(e)* և *Ḫa(t)ti*-ի *(BEZOLD BUDGE, tel-el- amarna tablets, p.150),* և ավելի հասկանալի է դառնում, որ արևմտյան սեմականը, երբ ասորերեն է գրվել, սխալմամբ մի ճիշտ ու սահուն ասորերենի ուղղական հոլովը *a*–ով որպես սեռական է գործածվել, և նրան ծանոթ վերջավորություն *i(e)*–ն կամ *i*–ն ասորերենում տրական *a* վերջավորությունն է ստացել:

Այնուամենայնիվ այս a-ն շատ պարզ ուրիշ կերպ էլ կարելի է բացատրել. քանի որ բոլոր երևույթներն ակնարկում են *El amarna* - ի ժամանակները, *a*- ի շնորհիվ, որը քանանական լեզվի թե՛ ուղղական և թե՛ տրական հոլովների վերջավորությունն է, հավանական է, որ հաթերի երկրին քանաներենում (հարավից երկիր լինելու պատճառով) *Ḫã(a)ta* են անվանել, և հետևաբար ասորական գրապատառիկները քանանականություն ունեն:

Շուրջ 1100 թվականին մ.թ.ա. հայտնվելով ասորական արձանագրություն–ներում, այսինքն՝ ասորական թագավորների գրություննե–րում՝ սկսում է շրջանառ-վել այս երկրանվան սեռական հոլովը՝ *Ḫã-at-ti, Ḫã-at-ti-i* և *Ḫa-ti-i (i մոտավորապես*= կամ = *e-ի* ներքո. *Tilgatpiliser I* –հատվածակողմ (*պրիզմա*)–ի սյունակ *V, 49; Western Asia Inscr. III 5, 15*):

Fraktin – ում գտնում ենք մեծ քանակությամբ գաղափարագրեր դեպի վեր համապատասխանաբար թագավորի և իր աստծու կամ նախահոր, թագուհու և իր աստվածուհու կամ նախահոր միջև։ Բայց արդյո՞ք այդ հայտագրերը միայն ներկայացված երկու կամ չորս կերպարանքներին են պատկանում. եթե թագավորից առաջ՝ վերջին նշանը և մի *t(a)r* նշան դրա ձախում լինի, ապա դեպի աջ պիտի կարդալ. այդպիսով, այս ամբողջ վերջին շարքը գաղափարագրերի և դրանից դեպի աջ գտնվող միջին շարքի գաղափարագրերը իրենցից դեպի աջ գտնվող թագուհու և աստվածուհու կամ մեծ մոր միջև՝ բոլորը մի խմբի են պատկանում, որոնց ուղղությունը այդ երկուսի՝ աստվածուհու կամ մեծ մոր միջոցով ճանաչելի չէ, և մենք պիտի ուրիշ հիմնավորումներով մի եզրակացության հասնենք։ Անգամ եթե մեր բացատրությունները աջում գտնվող խմբի՝ ԵՐԿԻՐ + *Ḫ(H)atia*՝ *Hatti*–ի առիթով ճիշտ լինեն (տ.վ.), պիտի դրա հետ միասին մի առասպելի պատկանեն։ Բայց եթե դա նույն պարագան չլինի, այդ մոտեցումը մեկ հետևյալ կշռադատման արդյունքին կառաջնորդի. եթե այս երկու նշանները իրարից առանձին եղած լինեին, ապա դրանք կարող էին իրենց թագուհու աստվածության կամ թագուհու մեծամորը հարաբերվել, և այս ակնարկումը »երկիր«-ին մատնանշել։

Բայց հիմա այս նշանները գտնվում են աստվածներից կամ նախահայրերից դեպի աջ՝ երկրորդ թագավորի գաղափարագրի ներքո։ Աստվածը կամ նախահայրը այդ դեպքում »թագավոր« – աստվածուհի կամ մեծամայր կներկայացնեին, բայց դա անկարելի է։ Դրանից հետևում է, որ յուրաքանչյուր նշան առանձին ու մեկուսացված չի գտնվում, քանզի նույնպես թագուհու աջում միայն մի հայտագիր գոյություն ունի։ Այսպիսով, ձախում՝ թագավորի առջևում գտնվողները նույնպես համոզիչ են ներկայանում, և հաստատուն է դառնում մեր բացատրությունը աջ կողմի առաջին երկու նշանների (այն, որ թագավորական զնդակի վրա է և մյուսը, որ երկրորդ թագավորական զնդակից տարբեր է) վերաբերյալ, ինչպես որ Երկիր-ը հաստատ *Ḫ(H)atia*-ն է, Իսկ սա արդյո՞ք ենթադրաբար միայն երկու խմբին՝ ձախում դիցերին ու նախահայրերին կամ աջում թագավորներին ու թագուհիներին է վերաբերում։

Աջում զտնվող պատկերները, ինչպես վերը տեսանք, անսովոր ուղղությամբ ձախից դեպի աջ են նայում, այդ պատճառով դրանք չեն վերաբերում դեպի ձախ նայող թագուհուն, դեռ ավելին՝ շատ հեռու են դեպի աջ դիտող դիցուհուց կամ մեծամորից: Դա հաստատում է արձանագրության բովանդակությունը: Կարդում ենք ձախում *ԵՐԿԻՐ + Ḫ(H)atá,* այսինքն՝ բուն իմաստով՝ *Ḫ(H)atá, ԹԱԳԱՎՈՐ* և նույն խմբի ներքո՝ աջում՝ *m t (a)r* m ʾ. Վստահաբար այս խումբը կամ դրա մի մասը նույնպես նշանակում են, որ այստեղ պատկերված են դիցուհին, մեծամայրը կամ թագուհին և *ԵՐԿԻՐ + Ḫ(H)atá*-ն, ինչպես և թագավորի նշանը ձախում, որ թագավորի համար նրա նախնիները կամ իր աստվածն է նշնակում:

Հաթերի հայկականության առթիվ չի կարելի այլևս կասկածել; հայերենում *mayr -* »մայր«-ը համապատասխանում է *māēter*–ին և շարունակ-վում է *m-t'(a)r*-ով, ինչպես *Boghazköi*–ի գաղափարագրերում »մեծ մայր–ի« սկզբնամասում՝ »աստծո« նշանի ներքո, կա մի *m* –ʾ, և սա *imia* է կարդացվում, որ նշանակում է »մեծն« կամ »հզոր«; *Ramses II* և *Ḫatзsзrз*–ի միջև կնքված խաղաղության պայմանագրում *Htз* երկրի *Astrate (Աստղիկ)-* ն է նշվել, Փոքր Ասիայի աստվածամայրը կոչվում էր »մեծ մայր«. դրանից այսպես եմ եզրակացնում, որ դա պիտի կարդացվի »*Hate-Hati* երկրից մեծ մայր«: Այսպիսով, աջ կողմի խումբը վերաբերում է ձախ կողմի երկու կանացի պատկերներին, և սա, անցյալում իմ արտահայտած կարծիքի հետ հակասության մեջ լինելով, պարզում է, որ դա նախամայրը չէ, այլ մի դիցուհի կամ թերևս *magna dea*–ն:

Առայժմ աջակողմյան խմբի վերջում դեպի վեր, մասամբ առ աստված հարող և ասպանդակը որպես պատվարժանության նշան կրող ու թագավորական զնդակի հետ իր ներքևի խմբի մեջ թագուհու աջում նրա համար գտնում ենք մի պատկեր՝ “կեռ երկաթ”, որ մի գլուխ է՝ սուր գլխարկով, նման այն բանին, ինչ իրենց գլխին կրում էին երկու կանացի կերպարները: Այս կուզահեռությունը պարտադրում է անառարկելիորեն ընդունել այն փաստար-կը, որ այս գաղափարագրերը »թագուհի« պիտի կարդալ, երբ »թագուհին« նշանակում ու կոչվում է մեծն դիցուհի, ինչպես ասորական *Ištar*-ը և փռյուգիական *Kybele*-ն:

***Jerabis*** -ում չի գտնվում բարուկը բռունցքով և բթամատը դեպի ցած մեծն դիցուհու գաղափարագիր, թեպետև *Membidji*–ի մոտի հին *Hierapolis-Bambyce*-ը իր հռչակավոր *Atargatis* - ի պաշտամունքով շատ հավանական է դարձնում, որ այնտեղ, ինչպես Սիրիայի մնացած մասերում, այդ սիրիացի աստվածուհուն պաշտել և հարգել են, և ***Jerabis***-ի *(Perrot, Histoir del Art IV, 808)* այս հարթաքանդակը ապացուցում է դա (համեմատիր նույնպես *Boghazköi*–ի (տ.վ.) վեմը և *Fraktin*-ի արձանագրությունները, որոնք էլ լուծում են հանելուկը):

*Karkamis*–ի »թագավորի« անմիջապես հետևում գտնվում է ***Jerabis*-I, 2, 5** և ***Jerabis* -** III, 3-ում մի գաղափարագիր, որ հազիվ թե *Fraktin*-ից տարբեր լինի; դա մի գլուխ է, ամենայն հավանականությամբ՝ մի կնոջ գլուխ, որի վրա մի երկար սրածայր գլխարկ կա ***Jerabis*** **I**-ի բացահայտ կանթով: Ինչպես *Biredjik*–ի դիցուհին, *Išara*-ն ևս *Indiši(-lim)-ma*-ի կնիքի վրայի գլխարկի և ասպանդակի պատկերն ուներ: Այդ գաղափարագիրը նույնպես »մեծն մայր«-ին որպես »թագուհի« է նկարագրել և դրա վրայի ուղեկցող նշանի առկայությունը արդարացվում է, և թագավորի ու թագուհու նշանները համընկնում են:

Մի ուրիշ ենթադրական գաղափարագիր մեծամոր համար, որը *Išḫara*–ին է համապատասխանում ասորերենում, ինչպես վերը մատնանշված է, և շատ հավանական է, որ նախկինում դա մի տառակապմություն է եղել և գաղափարագրերի ու բառասկզբի վերում կամ ներքևում է տեղադրված:

Առաջին աստվածը *Boghazköi*–ի դիցաշարերում իր առջևում ունի մի աստվածանշան՝ ներքևում մի գաղափարագիր, որը դժբախտաբար վնասված է. ըստ իմ ձուլածո պատճենի՝ դա կարող է մի հասարակ եռաժանի կամ երկճյուղ տեգ լինի, որը ասորիների մոտ ներկայացված ենք տեսնում: Ամենաառաջին աստվածը իր կողքին և իր առջևում ունի մի ցուլի դիմացի մասը (տես HUMANN und PUCHSTEIN, *Reisen, p.62), և ցուլը պիտի նրա խորհրդանիշը լինի. ասորական դիցը՝ եռաժանին կամ քառաժանին իր ձեռքում, փոթորկի աստված *Ramman*-ը՝ կանգնած մի ցուլի վրա *(Assarhaddon*-ի կոթողը *Sindjerli*–ից և հարթաքանդակը *Malthaya*-ից); տես *Mitthei. Aus d.*

*orient sammelungen d. Kgl. Mus. Zu Berlin XI*, աղյուսակ I և էջ 18 ու LAYARD, *Ninveh and its remains (Նինվեն և նրա փլատակները) I , 230 f.* ինչպես և PLACE, *Ninveh et l' Assyric*, աղյուսակ 45 և սիրիական ամպրոպի աստված *Hadad*–ը *Hierapolis-Bambyce*-ում ցուլերի վրա *(Lucian, De Syria dea, §31)* Նա »սիրիական աստվածուհու«՝ *Atargatis*–ի ամուսինն է, որ վստահաբար *Boghazköi*-ի ամենաառաջին աստվածն է, և նրա դիմացինը »մեծն աստվածուհին« է: Դրանից ելնելով՝ շատ հավանական է թվում, որ հիրավի նա եռաժանին և ոչ երկճյուղ տեգն ունի իր դիմաց, բայց դժվար թե կրում է այն:

*Gürün*-ի արձանագրություններում չորս անգամ գտնում ենք մի նշան, որը *Boghazköi*-ի նշանների հետ հավանաբար նույնական է և թերևս եռաժանի է: Այդ կապակցությամբ երկու անգամ (*Gürün I, 4 ; II, 6)* հանդիպում ենք մի խորհրդանիշի, որը եթե մեկ ծանոթ նշաններից մեկին համապատասխանի, »երկիր« կամ մի դիցանշան պիտի արտահայտի՝ իր վրա աջ կողմում պատկարժանության նշանով, որ համենայնդեպս մի շարք նշաններով հանդերձ դրանից կտրված *Boghazköi*-ում աստծու գաղափարագիրն է նշանակում մեծամոր հետևում: Անկասկած, մենք գտնվում ենք նույնպես մի դիցաբանական միջավայրում (կամ, ավելի շուտ, մթնոլորտում), ուստի կարող ենք ասել, որ շատ հավանական է, եթե չասենք՝ վստահաբար, որ *Gürün I* և *II* –ում չորս անգամ եռաժանին պիտի ընկալել որպես *Boghazköi*-ի առաջին աստծու խորհրդանիշը, և այնուամենայնիվ առայժմ կարելի է առարկել (համեմատիր ներքևում), որ *Gürün II, 1* և *2*-ում այդ գաղափարագիրն իր վրա դիցանշան չունի:

Բայց այդտեղ երկու անգամ այդ նշանը նույնն է, ինչ *Gürün II, 6*- ում, թերևս նաև *Gürün I, 4* – ում՝ ենթադրելի եռաժանին մոտը և հավանական դիցանշանը իր վրա: Դա կարող է միայնակ առանց դիցանշանի նույնպես այդ դիցանվան համար որպես արտահայտող ծառայել, բայց դա խոչընդոտում է նրա նույնացմանը *ωší*-ի նշանի հետ (տ.վ.) = »հսոր, ուժեղ« իմաստով, որի հետ նա այլապես, ամեն դեպքում միաձուլված կարող էր լինել: Հիմա մենք կարող ենք ուղղակի այդ նույն նշանը՝ հավանաբար մի զավակսանի նկար` վերը՝ դ Կնիքի մակերեսի վրայի բնագրերի մեջ մի աստծո դիմաց տեսնել (համեմատիր PERROT և *Chipiez, Histoire de l' art IV, 727* և նման մետաղադրամների վրա, *Babelon, Les Perses Achémenides, Tafel Vf* .): Դրանով փաստարկված եմ համարում,

որ եռաժանին *Boghazköi*-ի աստվածահայրերի խորհրդանիշը պիտի եղած լինի: Սովորաբար մենք այդ նշանին արձանագրություններում չենք հանդիպում, բացի *Bulgarmaden I*-ից, բայց այդտեղ դա մի ուղղակի է նկարազրում և նույնպես մի թագավորական տիտղոս կամ մի փառաբանության ածական, կամ նմանատիպ մի բան (տ.վ.), որը կարող է մեկ շփոթության մեջ գցել, քանզի աստվածը այս զաղափարագրերի հետ *Boghazköi*- ի աստվածների շարքի գագա–թում է գտնվում:

Երբ դա ավելի մեծ է ներկայացվում, քան ուրիշ աստվածները, ինչպես աստվածամայրը աստվածուհիների շարքի գագաթում ավելի մեծ է, քան ուրիշ աստվածուհիները, այդ ժամանակ նա պիտի վստահաբար մնացած աստվածնե–րի գլխավորը լինի. և անհավատալի է, որ երկու արձանագրություններում, ըստ իրենց գրելաձևի, հավանաբար նույն ժամանակին պատկանելու կամ իրար մոտիկ գտնվելու պատճառով նա նույն ձևով է հիշատակվել:

Այս համելուկի լուծումը կարծես բերում են *Ivriz*–ի և *Fraktin*–ի հայ–տագրերը. *Ivriz*-ում *Eregli*–ի շրջակայքում՝ հին *Heracla*-ում, մի աստված գոյություն ունի՝ ներկայացված խաղողներով աջում և մի գավազան ձախում; Tarsus–ի մետաղադրամներում հանդիպում ենք մի պատկերի՝ խաղողի ողկույզներն ու ցորենի հասկերը մի ձեռքում և մի գավազան՝ մյուսում (*Babelon, Les perses Achemenids*, աղյուսակ *Vf.,* համեմատիր աղյուսակ IV; *PERROT, Histoir IV, 727)* Դա կարդացվում է חרז .כע, այսինքն՝ »Տարսուսի տերը« (ըստ *Meyer*-ի` Zeitsch. d. Deutsch. Morg, Ges. 31, 739) *Byzanz*–ի *Stephanus*–ի՝ Ադանայում նշված *Κρονος*–ի դիցանվան ներքո Աստծո պատկերի աջում գտնվող հայտագրում նրա անունը փնտրելիս աջում` առաջին շարքում, մի նշան ենք գտնում, որը դժվարությամբ է տարբերվում այն նշանից, որը երևում է Ափսեի արձանագրության *i-a-i-* ի հետևում և *ś-t(a)r* = ճորտ կամ պավակ է նշանակում. և այժմ հանդիպում ենք śtr նշանը մի դիցանվան ներքո *Fraktin*–ի աջ մասում: Դրանից հավանականություն է առաջանում, որ այդ կասկածելի մեհենագիրը κρυνος–ի զաղափարագիրն է. նախքան մենք մեր եզրակացությունների շարքը լայնացնենք, կցանկանայի սրան ավելացնել Bor 2–ում այն, ինչ որ մենք մինչ հիմա

հայտնաբերել ենք . [աստվածությունից] ?, ծառա(?) *ś-ṕ(á) ṕ(á) ?(-w(ṕ)) (-)(á)r(-)(!), śt-(á)r(-) (ուղղական) [դիցուհին]?* Մարդ Այս հոլովով *ś-ṕ(á) ṕ(á) ?(-w(ṕ)) (-)(á)r(-) śt'-(á)r(-)* թագավորի հարաբերական համզամանքը մի աստվածության հետ ակնառու է դառնում, և ոչ միայն այն պատճառով, որ այդ հարաբերութ–յունը երկու կապակցությունների հետ համատեղված է, այլև վերը նշված *śtr* կասկածելի հոլովի շնորհիվ: Հենց դրանից է բխում այն ապացույցը, որ նաև *śt'-(á)r, r á m ś ṕ(á)* *BULGARMADEN-* ում նույնն է ասվում, և այդտեղ *m-s* և *?(-w(ṕ)* նույն նշանակությամբ են հաստատվում և ներկայանում *(տես վերը)* և *ṕ(á)~ ṕ(á),* ըստ Bor 3–ի, մի ինքնուրույն բառ է և այն էլ` մի զոյական անուն (ՄԱՐԴ դրոշիչով), երկու բնագրի բեկորներ, որ այսպես պիտի խմբերի բաժանել: *ś ṕ(á)- ṕ(á), ?(-w(ṕ)), (-)(á)r(-),śt-(á)r(-)= »ես ṕ(á)- ṕ(á)-ի մեծի(?) (á)r(-)-ի պալակ, (ճորտ) «* և *ś-t'(á)r (-r- á) m-ś ṕ(á)- ṕ(á)=պալակ (ծառա?)(-r–*ի*),* մեծի *ṕ(á)-ṕ(á)* Գտնում ենք, որ *ivriz*-ի 1–ում, ենթադրաբար »κρυνος«–ի գաղափարագրի առաջ` պատվի նշանի վրա, մի *ṕ(á)* սխալ ուղղությամբ կարող է լինել(!), և իր վրա` մի á: Շատ հավանական պիտի լիներ κρυνος-ի śtr–ը Ափսեի արձանագրությունում նույնությամբ որպես (մեծն) *ṕ(á)-ṕ(á)*–ի *śtr*–ին *Bulgarmadan*–ում և *Bor*–ում նկարագրել, և կարծում ենք, որ *ivriz*-ի արձանագրությունը կվավերացնի այն տեսակետը, որ այդտեղ հարցական նշանը պատվարժանության նշանի ներքո մեհենագիր է *ṕ(á)-ṕ(á)=* κρυνος-ի համար և իհարկե որպես մի հնչյունային լրացուցիչ ևս կարող էր լինել: κρυνος- ը ՙ*Pέa-* ի ամուսինն է. ՙ*pέa*-ն պիտի *Boghszköi*–ի աստվածների շարքի գագաթին առաջնային դիրքում լիներ, նրա դիմաց կանգնածն էլ, իհարկե, նրա ամուսինը: Դա պիտի նույն κρυνος- ը լինի, բայց նրա գաղափարագիրը նույնը չէ, որ *Ivriz*–ի κρυνος-ը պիտի ունենար: Հարկ է այստեղ բացահայտ ընդգծել, որ այս հարցում *Ivriz*–ի աստծուն և հաթական ՙ*Pέa-* ի ամուսնուն նույնացնելը կարող է ձախողվել, և դրա հարկը բոլորովին էլ չկա, անգամ եթե ուղղակի B*oghazköi*–ի դիցաշարքի ամենաամուրին աստվածը իրականում (և սա այնքան ճշգրիտ է, ինչքան վստահելի) եռաժանին կամ երկճյուղ տեգը` որպես խորհրդանիշ, ձեռքում ունենա: Այնուհետև *Ivriz*–ի հայտագրություն I-ում որպես դիցանուն–ների բացահայտում կարդացվում է` *S-*՚*- ni–ś*

(ուղղական նշան), նույնպես »*Sy(u)ennesi(s)* –ի….ն« կամ »*Sy(u)ennesi(s)*–ի…ն»: Եթե վերջին թարգմանությունը ճիշտ լինի, դա գաղափարագիրը անարժեք կդարձնի մեր հարցի պարզաբանության համար, բայց ըստ երևույթին՝ այդ կասկածելի նշանը նույնություն ունի *ωši* = »ուժեղ«–ի հետ: Այդ դեպքում կարելի է թարգմանել »*Sy(u)ennesi(s)«* – ը որպես մի տիրոջ, որ Կիլիկիայի թագավորների և իրենց բարձրագույն աստվածների տիրողն էր, ինչն ամենաչնչին անվստահությունը կարող է առաջացնել »κρυνος«-ը Fraktin-ում լիարժեք *dsari(o)* (թագավոր) է կոչվում, ինչպես հաթական թագավորները հաթական Կիլիկիայում. բայց ահա, ըստ BULGARMADEN–ի տող *1 (cf. Z,2)*-ի եռաժանին ամենայն հավանականությամբ *Sy(u)ennesi(s)*-ի գաղափարագիրը կամ նրա մի մասն իբրև տիրոջ է պարունակում. իսկ եթե B*oghazköi*–ի եռաժանին »κρυνος«-ի խորհրդանիշը լիներ, դրանով հեշտ ու պարզ *Sy(u)ennesi(s)*-ը պիտի կարդացվեր, և դրա միջոցով *Ivriz*–ի հայտագիրը B*oghazköi*–ի հետ լավագույն ներդաշնակության մեջ բերվեր: Այդտեղ մենք կարող ենք վերծանել »κρυνος«-ի գաղափարագիրը բուն անվան և նրա պատվանվան մեջ, բայց այս դեպքում միայն վերջինը կարող ենք կարդալ: *Fraktin-ի* արձանագրությունը իր հայտագրերով մեկ բերում է դարձյալ անախորժ դրության՝ խոչընդոտելով մեր իրավացիությանը: Չափում՝ ուղիղ աստծու դիմաց, ըստ վերը ներկայացրած »*H̱(H)ātē(i)* (երկրից) թագավոր, ?« այնտեղ՝ աստծու աջում, »մեծամայր«–ն է նստած, այնպես որ ոչ մի կասկածի տեղիք չի տալիս այն հարցը, որ տվյալ աստվածը նրա ամուսինը՝ κρυνος-ն է: Բայց թե նրա գաղափարագրերից կամ տիրողներից ո՞ր մեկը պիտի համարենք ճիշտ, չեն հաստատում ոչ *Ivriz*–ի և ոչ էլ B*oghazköi*–ի գաղափարագրերը: Կրկին գտնում ենք այդ կասկածյալ նշանը երկու անգամ ուրիշ թագավորից հետո, *Ivriz*–ում. և պիտի ակնկալել, որ *Ivriz*–ի գաղափարագրերում թագավորի համեմատությունը աստծուն տպավորիչ է: Սրանով, սակայն, հավանական է դառնում, որ տվյալ նշանը ուղղակի ներկայացնում է 1) *Ivriz*–ի աստծուն 2) *Fraktin*-ի աստծուն 3) նրան, որ սրա նման *Fraktin*-ի, B*oghazköi*–ի և κρυνος-ի հետ նույնություն պիտի ունենա: Թե այժմ ինչպե՞ս դա և այս երրորդ գաղափարագիրը իրենց պիտի բացատրեն, ակնարկվում է

*Ivriz II* –ի երկրորդ և երրորդ տողերում: Երրորդ տողում կարդում ենք մի նշան, որին հետևում է *i–á.* սա հիշեցնում է *Ḫ(H)atiá* բառը, որով պայմանավորված է Կիլիկիայի թագավորների տոհմանունը (Ափսեի արձանագրություններ). եթե այդ բառը գոյություն ունենար, կարող էր այդ կասկածելի նշանը *ti* կարդացվել. *Ti i*–ն կարող է համգստությամբ *ṫi-* նշանի միջոցով, ինչպես նաև միայն *ṫ*-ով արտահայտվել, բայց *ṫ i* հաթերենում կոչվում է »Տեր«, և այդ կարող էր *Ivriz*–ի առաջին տողում և *Fraktin*-ում հաջողությամբ κρυνος-ը ներկայացնել, որ Կիլիկիայի թագավորի երեք տիտղոսներն են եղել 1) *Sy(u)nesi(s) (Ivriz I, Boghazköi) 2)dsari(o)* =»թագավոր« (*Fraktin*) 3) *ṫ'íí* = »Տեր« *(Ivriz II; Fraktin;* համեմատիր վերը): Ես չգիտեի, թե ինչ կարող է սրա հակառակը լինել: Աստղերենում նմանություններ շատ ու չափազանց շատ են գտնվում:

Որպես Կիլիկիայի աստվածություններից չորրորդը այն աստծուն կարող ենք հիշել, որի գաղափարագիրը երկու քայլող ոտքերն են, որոնք մինչև վերը ծածկված են մի երկար բաճկոնով, բայց ակներև է, որ նա կարող էր լրիվ մերկ եղած լինել: Այդ գաղափարագիրը ուրիշ բանի չի նմանում, բացի այն, որ մի աստծու կերպարի ներքևի մասը նկարագրած պիտի լիներ՝ գտնվելով *Boghazköi*–ում, մարտական կացինը ձեռքում, երրոսսարդ (?) աստծու դիմաց, որը նրա խորհրդանիշն է. այդ գաղափարագիրը գտնվում է դեռ *Gürün – I, 4* և *II, 6* -ում. Կարելի է հարցնել, թե հորիզոնական ոտքը իր տակի ուղղաձիգ ոտքի հետ (*Jerabis III, 4)* այս խորհրդանիշի մի տարբերակն է. այնուամենայնիվ դրան հետևում է մի նշան, որը աստվածության հետ ինչ–որ մի հարաբերության տպավորություն է առաջացնում՝ բթամատը դեպի ցած մի բռունցք և մի ձեռք՝ բութը դեպի ներքև. մենք գիտենք, որ դրանով դիցուհիներն են նկարագրվում, և որտեղ այդպիսի նշաններ են երևում, իրենց վրա կամ ներքևում բառակիզբ են ունենում: Աստվածություններ նկարագրող այս նշանները մեր ստացած բնագրերում երբեք մի բառակազմի միջոցով իրենց շրջապատից չեն տարբերվում: Այս եզրակացությունից պարզ է դառնում, որ երբ մի դիցանշան ինչ-որ ձևով մեկուսանում է, դա մի դիցուհու և ոչ թե մի աստծու

մեհենագիր պիտի լինի, և ըստ դրա՝ կարելի է դառնում ավելի մեծ քանակությամբ գաղափարագրեր պարզաբանել:

Ենթադրաբար կա նաև մի ուրիշ գաղափարագիր, որին մենք բառասկիզբով աջ ու ձախում իր վրա՝ հանդիպում ենք *Jerabis*–ում, մանավանդ երբ նա մի ամբողջ շարք դիցանունների մեջտեղում է գտնվում:

## Հաթական դիցանուններ

Հունական շրջանից արևմտա–կիլիկիական անձնանուններում այնքան մեծ թվով դիցանուններ են մեզ հասել, և այնքան սակավ է դրանց օգնությունը՝ արձանագրությունները կարդալու հարցում, երբ այդ անուններում անվիճելիորեն հաթական լեզվի տարրեր են առկա, և դիցանունների անվանումները աստվածություն կրող անուններին այնքան քիչ են կապվում, որ առայժմ մեզ հասած արձանագրությունների հետազոտությամբ մի որոշման հանգելիս մասամբ վստահորեն, մասամբ ենթադրաբար և, իհարկե, առավել ևս հազվադեպորեն կարող ենք օգտագործել այս լեզվաբեկորները՝ որպես պատմական իրողությունների փաստարկում: Մեկ, բնականաբար, շատ կհետաքրքրի, թե ինչպես է կոչվում մեծ *ṕ(á)-ṕ(á)*–ն՝ *Irviz*–ի և *Fraktin*–ի առաջնային *Boghazköi*–ի աստվածը, ինչպես և »մեծ մայր«–ը:

*Ivriz*–ի երկրորդ արձանագրության մեջ հաթական κρυνος-ի անունը իր վերջավորությունում մի *a* ուներ, որ միգուցե մեկ դեպի մեր նպատակը կառաջնորդի: Փորձենք արտազատել Արևմտյան Կիլիկիայի վերոհիշյալ անունները, որոնց վերծանության համար տքնել էին ամենից առաջ SACHAU–ն Zeitsch. f. Assyr. VII, 85 ff -ում և KRETSCHMER-ը Grich. Sprache (Հունարենը) p. 357 ff-ում:

Որպես մի հաստատուն կետ՝ պիտի *Sanda*–ի հետ կապակցված անձնանուններին դիմենք: Այստեղ *Sanda*–ն մեզ համար որպես դիցանուն է հաստատված. ասորերեն Նամակ K 582, տող 15–ում գտնվում է *Sanda-pī* անունը, որ փոխաhարար համապատասխանում է *dapi-tarḫu-n-dapi*–ում՝ ասորական ցուցակի *H 1359. obv. Col II*, 39-ին, ավելի ուշ՝ *δβι–ηs, ρω–ν–δβι–ης,* (SACHAU, 1.c.p.86)-ին, նույնպես և *pī* = ավելի ուշ *βι–ης, Ταρχυ–μ–βι–ου (1.χ.p.90)*–ին. այդպիսով շատ հավանական է դառնում, որ նույնպես *Tarḫu* =*Ταρχυ–, Ταρχο–* և *Τραχο–,* մոտավորապես *Trkho*՝ մի դիցանուն է: Կազմությամբ բարդ բառերը, ինչպես *Τροχο – ζαρμ – α – ς Τροχο–μ–βιγρεμ–ι–ς, Τραχο–αρβασ–ι–Τραχο–ς Ταρχυ–αρ–ι–ς* և վերոհիշյալ մեջբերված *Tarḫu-n-dαpi*-ն ավելի հավանական են դարձնում, որ *Re* – տարրը *ρισ–ζαρμ–ας, ρω–μ–βιγρε–μ–ς,* ρο-*αρβασ–ι–ς* –– *ρω*-r-*δβι–η–ς, Ια, Α-Ια–ζαρμ–ας* և *Α-ζαρμ–α–ς, Τεδι–τεδι–αρ–ις, Νερ*–ը *Νερ–αρ–ι–ς*–ը դարձնում է դիցանուններ, և եթե *Oαρι–ς*–ը Οα և αρ–ισ –ի կարելի է տարրալուծել և *Οα*–ն = *Ουα, ουασι–σ*–ում գտնվի և *ουα* և *σι–ς* – ի տարանջատվի, ինչպես և *surmi*-ն *uasurmi*-ում (տ.վ.) միայն *Sandasarmi* (տ.վ.) ձևով լինի, այդ դեպքում կարելի էր ընդունել, որ նույն ձևով հատուկ անուններ *ουασι–ς*-ը, *Κιδασι–ς*-ը, *Κιδα–μουασι–ς*, *Τβερα–σηνα–ς* և *ορβαλ–σηνα–ς*-ը, ինչպես *Ουα–Κιδα–, Ο(υ)λ–(β)ρα–, Τβερη(α)* և *ορβαλα*–ն դիցանուններ են: Բայց թե դրանք հաթական (եթե նույնիսկ նախկինում այնքան էլ բնիկ անուններ չեն եղել) աստվածանուններ են ներկայացնելիս եղել, մենք այժմ չգիտենք, այդ պատճառով կարելի է, բացի *Sanda*–ից, միայն մի քանի անուններ ընտրել, որոնց անձնանունները դիցանունների հետ միաձուլված են. Կարծում եմ՝ այդպիսիներից են *αρι–ς*, *αρβασ(–)ι–ς*, *αββασ(–)ι–ς* և *ζαρμ–α–ς* – ը: Դրանից պիտի *Τραχο*– (և տարբերակները), *Ρω*–, *Ια–, Α–, Τεδι*–, *Νεν* և *Ουα*– (*ουαββασ–ι–ς*- ի պատճառով) հաթական աստվածությունների նկատմամբ իրենց նախնական ծագումը՝ բնիկ թե դրսից ներմուծված, բացատրեն. ուրիշ անունների առթիվ չի կարելի դա վստահությամբ ասել: Կարելի է որպես հավանականություն ընդունել, որ աստվածների կարգն ու իմաստը որոշ չափով անձնանուններում իրենց ներկայության հաճախականությունից

կամ հապվաղեպությունից է երևում. ըստ այդմ՝ բարձրագույն աստծու և հաթերի մեծամոր անունը (բայց վերջինս հավանաբար ոչ արական անձնանուններում, որոնց հետ են առնչվում փտահաբար մեկ ծանոթ անունների մեծամասնությունը) համեմատաբար հաճախակի պիտի հանդիպեն: Դրանց տեսնում ենք ամենաշատ պատահող անուններում, օրինակ՝ *T(a)rk(h)o* և ավելի վաղ՝ շուրջ *1200* թ. Քրիստոսից առաջ, շատ ու շատ հաթական անուներում և *s(з)*– ով (տ.վ.), նաև հաճախ կիրառվող pω –ով անուններում *(KRETSCHMER, Griech. Sprache, p.361 ff.)* և համաձայն դրանց՝ *Sanda*-ն և *Ua*-ն, ըստ վերոհիշյալ քննարկումների, հաթերի լեզվում հետագայում ընտելացան և բնիկ դարձան, դրանց ձայնավոր վերջածանցը այդ բարդ կառույցի մեջ է: Դիցանուն *Sanda*–ն (տ.ն.) բարդ կառույցում նույն կերպ է արտաբերվում, թերևս ինչպես ուղղական *ŏ* (*Terxo-* և *Ti-rз-ρз*, այսինքն՝ *Trga* կամ *Trge*– կամ *Trgo,* բայց երբեք *Trgu*), *ō* և *a*-ն: Համաձայն *Irviz*–ի Տեղեկագիր *I*–ի՝ *Ivriz*–ի աստծու անունը ունի մի *á* (այսինքն՝ *a* և *o* և նույնպես *u?*) իր վերջավորությունում, և դրանից ելնելով՝ կարծում ենք, թե դրա գաղափարագիրը որպես ***Trkho**, **Ro**, **Sanda*** կամ ***Ua*** կարելի է կարդալ Այն, որ այս արձանագրությունը գուցե մի աստվածություն է հիշատակում, չի կարող այստեղ բնականաբար ոչ մի փավերացում ներկայացնել. *Gürün II*, 5–ում երևում է ԱՍՏՎԱԾ *r-a*-ն՝ վրան մի արժանապատվության նշան, բայց արդյո՞ք այդ պատճենը ճիշտ է, թե՞ այդտեղ դիցանշանի փոխարեն մի երկրի նշան է տեղադրված, կամ արդյո՞ք այդտեղ հայտնված աստվածը *Ivriz*–ից է. թերևս կարելի է մեր ենթադրությունը *Bulgarmadan* 2-ով կամ *Bor* 2–ով հաստատել, որտեղ կարդում ենք. *śṫ(a)r rámś ṕ(á)-ṕ(á)*. այստեղ են գտնվում, ինչպես վերը տեսանք *Bor 2* և Ափսեի արձանագրությունների շնորհիվ, *ś-ṫ (a)r, m-ś* և *ṕ(á)-ṕ(á)* նշանները՝ որպես բառախմբերն իրարից անջատող: Հնարավոր է, որ *r*–ն՝ որպես հնչյունային լրացուցիչ, *t'(a)r*–ին պատկանի և *á*-ն՝ որպես ձայնավոր վերջածանց, *śtr* »ուստր« (կամ ծառա)–ն ներկայացնի: Միայն թե այսպիսի մի զարդարուն գրառճ երբևէ չի հայտնվում:

Դրանով ավելի հավանական է դառնում, որ *r-a*–ն ինքնըստինքյան մի բառ է կազմում, ինչպես մեծ »*baba*«–ն *(=m-s ṕ(á)-ṕ(á); Ivriz*–ի աստծու և նրա անունը

ենթադրաբար պիտի *ro* կամ *Tarko(Trkho),* եթե ոչ *Sanda* կամ Ua լիներ: Այդ ժամանակ *r-á*–ի մեջ *Rō* անունը կարելի էր ենթադրել. Նույնն է և (*á*)*r*(–)ում *ś ṕ(á)- ṕ(á) ?(-w(ṕ))*-ից հետո և śi̇-(á)r(-) + ուղղական նշանից առաջ *Bor 2*–ում. այս դեպքում այն կարող էր »մեծամոր« ամուսնու անունը լինել: Ցավոք, պղեմն երկու քննարկված հնարավորության բացատրություն *r-á*–ի համար *Bor 2-* ում (սա ի միջի այլոց կարող է սեռական վերջածանց լինել) ևս հայտնվել է, որով *aro* = արական բառի սեռականը կարող է ներկայացնել:

Եթե *Pω*– և *Tarḫu*– և այլ անձնանունների հետ միախառնված անունները որպես հաթերի դիցապետի այս երկու անվան հետ համախականության պատճառով պիտի նկատի առնենք, ապա *Tarkho*–ին ևս պիտի հիշենք: Այն ժամանակ, երբ սիրիական երկնքի աստված חדד –*Hadad*-ը Բաբելոնում բնիկ դարձավ որպես սիրիական երկնքի աստված בעלשמן – ն, այսինքն՝ *Baʿl* կամ *Baʿl-šammān*-ը՝ Հայաստանում, տեսանելի երկնային և բնության մթնոլորտի երևույթների ասորական աստված *Rammān*-ը՝ Դամասկոսում և համայն ամբողջ արևմուտքում, ապա կարող էր մի աստված ևս, նման ու նույնատիպ գործածություն ունեցող մի աստված Փոքր Ասիայում, ազգից ազգ փոխառնվելով, շրջած ու թափառած լինել և հետագայում տարածվելով և *Tarḫu-Τροχο* և այլ անունների հետ միախառնվելով՝ անձնանուն դառնալ, այնպես որ այն կարծիքը, որ նա հաթերի երկրի աստվածներին չի առնչվում, թեական է: Հավանական է՝ *TUR-KU*-ն, ըստ ասորական բնագրի՝ K 2100, Obv. I 13-, ամպրոպի աստծու անուններից մեկն է և ոչ ինչպես Wes. *Asia inscriptions*–ի երկրորդ հատորի 48–րդ էջի 33–րդ տողում՝ լուսնի աստված *Dumu-gu* կամ *Tur-Ku*, և դրա առթիվ ասվում է, որ *Tarḫu*–ն հաթերի ամպրոպի աստծու անունն է. դեռ ավելին, հնարավոր է, ինչպես HILPRECHT-ը (*Zeitsch. f. Assyr. VII, 317*-ում) իրավացիորեն նշում է այդ առումով, որ քուսայական բառ *Targu*–ն ենթադրաբար դրա հետ մի դիցանուն է ներկայացնում, ասորաբաբելական *Bēl*-ը (*երկրների տերը*՝ ըստ HILPRECHT-ի) կամ *Anu*-ն, երկնքի աստծուն համապատասխանելով, նույնն է ապացուցում. և վերջապես հավանական է, որ եբրայերեն תרח- *Teraḫ,* ավելի վաղ՝ *Tarḫ–ը* Աբրահամի հոր անվան հետ նույնություն ունի և դրանով առնվազն դրա

արական սեռի պատկանելությունն է ապացուցում, բայց սրանք նույնպես վստահելի փաստեր չեն:

*Sanda* Հին Հունաստանում նշանակել է ժամանակ (տ.ն.) և Կիլիկիայի Հերակլեսն է: Բայց նա, որպես մեծ աստված, աստվածամորից հետո երևում է *Boghazköi*-ում, ուրեմն *Sanda*- ն նրա անունն է եղել (տ.ն.): Այժմ հավաստի է, որ այս անունը հետագայում (ժամանակին մեզ է հասել հին հունարենով) երկու իրար հետ համաձուլված պատկերներն է ընդգրկում, որոնցից մեկը, ըստ ոմանց, նկարագրում է աստվածապետին և ըստ ուրիշների՝ Հերակլեսին, և մինչև այժմ ճշգրիտ ապացուցված չէ, թե որ պատկերը որ աստծուն է ներկայացնում: Դիցապետի նշանը եռաժանին է, այսինքն՝ շանթ, *šand, šant*ʻ և *šant*ʻ*i, šant*ʻ–ական, և *šant*ʻ–ը կարող է *p*ʻ*oyt*ʻ*, σλουδ–η,* ավելի հին *šant*-ին համապատասխանել: Ասորերենում երկնատերը՝ נצלשמו – ը, առանձնապես շատ է բարձրացված, այնպես որ նա χεραυνος–ն է (*Palmyra*-ում) և ունի մի մակդիր աարական փոթորկի աստծու՝ *Barku*–ի, այսինքն՝ »կայծակ«: Այդպիսի հանգամանքներում պիտի առնվազն աչքի առաջ ունենալ, որ եթե *Sanda* հունարեն բառը Σανδα–ով արտաբերվում է որպես նախնական հաթերի փոթորկի աստված և երկնքի տիրակալի անուն, այս պարագայում, ինչպես նկատել ենք, կիլիկիական Σανδων–ի և հայերեն *Sandon*-ի մեջ որևէ մի կապակցություն անհավանական է: Մի քանի խոսք էլ աստծու անունների առթիվ. *Ed. Meyer*-ը *Zeitschrift der Deutsche Mor. Ges. 31, 739* –ում նկատել է. »Հնարավոր չէ հավաստի որոշարկել, թե տարբեր տեսակի անուններ, ինչպես Σανδων, Sandon, Sandakos, Σανδας(Basil), Σανδης, միմյանց ինչպես են հարաբերվում«:

Բայց ես այն կարծիքին եմ, որ նախ և առաջ պիտի պատել Սանդոն անունը, քանի որ այն, ըստ ականատես *Strabo*–ի *(Ed. MULLERI p. 575,10)*, *Plutarch*-ի *(Poblicola 17)* և մի արձանագրության *(Corp. inscrip. Grace., No 4401),* այնուամենայնիվ մի անձնանուն է, ոչ թե դիցանուն:

*Johanes Lydus (De magistr. III, 64)*–ի հայտնած կարծիքը, որ Սանդոն Հերակլես աստծու անունն էր, չի ապացուցում, որ նա Սանդա–ի և մի ուրիշի հետ նույն

համեմատական աստիճանին կամ հարթակին է (դա պիտի ոդպես կարճանուն նկատել)։ *Σανδης* և *De sandus* (ուղղական; *Byzanz-i* Stephanus, Αδανα–ի ներքո; *HIERONYMUς* ըստ *EUSEBIUS* II, *schöne*–ի հրատարակության 29-րդ հատորի պարբերականը), Σανδα (սեռական *Basilius, De Vita S. Theclae II, 15), Σανδην* և *Δι σανδαν* (հայցական*; AGATHIAS II, 24; Syncellus* ըստ *schone*-ի հրատարակած *EUSEBIUS*-ի) մի ուղղական Σανδα-ի են ենթադրում, որ նույն Կիլիկիայի *Sanda*-ն են ենթադրաբար նախադրում։ Պարզ չէ, թե Σανδαχος–ը ընդհանրապես դիցանուն է, թե անձնանուն, այնուամենայնիվ, մասնավորապես հայերեն K-ի և դրանից ելնելով՝ աստծու հետ համատեղված անունների հետ ոչ մի բան չի ներկայացնում, բացի հետևյալից, *Sanda-pi, Sanda-s(š, ḫ)a(i)r-mi* (Aššurbanaplu-Sardanapal, Rassam-ի գլանը (սյունակ II, 75), *Σαδασναμις*, մի տեսակի Sandasa(r)mi–s *(zeitsch. f. Assyr. VII, 94),* և Σανδανσαχα – ն նույնպիսի Sanda-ի են ենթադրում։ Անպայման չէ, որ Σανδανσαχα–ն Σανδαν– և σαχα–ից, այլև հնարավոր է՝ Σανδα– և–(α)νσαχα – ից կազմված լինի. միակ և բացառիկն է *Ammianis MARCELLINUS (XIV, 8, 3)*-ը, ուր երևում է ուղղական, *Sandan*-ը որպես *Tarsus*–ի հիմնադիր։ Ես հավատում եմ, որ մենք կարող ենք, անգամ եթե դրա մեջ իրոք մի դիցանուն պետեղված լինի, առանց այլևայլի փաստել, որ այդ բառաձևը մի սխալ ուղղու է համզում։ AMMIANUS-ը կամ նրա վարահիված անձանցից մեկը ինչ–ինչ պատճառներով հայցական *Sardan*–ը սխալմամբ ուղղական է ենթադրել։ Բայց եթե *Sardan*-ը մի *Sandon* և ընդհանրապես մի անձնանուն լիներ, այդ դեպքում մենք ոչ մի հիմք չէինք ունենա աստծուն *Sandan* անվանելու, ուր *հիարկե –a-n,* ինչպես *–on* և *a-k-os*-ը, ինչ-որ փաղաքշական վերջածանց, ընդհանրապես ինչ-որ վերջածանց կարող է լինել։ Սա բավարար, չնայած ոչ այնքան հակադրվող է AMMIAN–ի դիրքին, և ամեն ինչ վկայում է այն մասին, որ աստծու անունը *Sanda* էր։

Դիցապետը և կայծակի աստվածը՝ որպես »մեծն *ṕ(á)ṕ(á)*«, »մեծամոր« ամուսինն է, ով միգուցե վաղեմի ժամանակներից ասորերենում *Komana Ma* էր հոչակվել *ṕ(á)ṕ(á)*–ում (արտասանվում է *papa* կամ *baba*) մի թոթովաբառ »հայր« պիտի տեսնել և հայերենի և թրաքիա – փռյուգիական բառարմատների մեջ ինչ-որ

ավելի նեղ հարաբերություն ընդունել, լինի դա *Bithyni*–ական *Ζευς Παπας* կամ *Παππωος* (KRETSCHMER, *Griech. Sprache p. 241 f.)*, ընդ որում փռյուգերենում միգուցե այն նույնանում է *Ζευς, Βρονεϖρ χαι ᾿Α*στραπτωρ-ին (KRETSCHMER, 1. C. 241 F.) - ին և հիշեցնում է սկյութական *Ζευς Παπατος (1.χ.;* *Herodot IV, 59)*–ը՝ *Baba*–ի ենթադրական պտտասանության դեպքում հայերեն անձնանուններ *Bab, Babik 9 Babot*՛*s* և այլնի շնորհիվ:

Ինչպե՞ս էր հաթերի մոտ կոչվում »մեծամայր«-ը Նախապզուշաց–նում եմ՝ նրա անունը կապված է արական անձնանուններին, ուստի դրանից ելնելով՝ պիտի ենթադրել, որ նա եթե ոչ *Ro*, ապա *Tarhu* (*Trkho*) էր կոչվում, և ինչպես վերը բացատրվեց, այս անունը *Ro*-ին կից է լինում և հաճախ որպես բառամաս անձնանունների մեջ է գտնվում. բայց դա դժվար փաստելի է: Արժե այստեղ նկատել, որ ավելի նոր ժամանակների կիլիկիական բոլոր արձանագրություններում բացահայտված դիցանուններից ոչ մեկը, թերևս ոչ հաթական Փոքր Ասիայում, առայժմ չի նկատվել, բացի *Trkho*-ից (տես KRETSCHMER, *Grech. Sprache 362 ff*, և *223 f.*). եթե հիշելու լինենք, թե ինչքան լայնորեն էր ծավալված այնտեղ »մեծամոր« պաշտամունքը, ապա անկարելի կլիներ չնկատել մեր ենթադրության հավաստիությունը և որպես աստծու անվան տարածման փաստ՝ նրա պաշտամունքի սփռման պատճառը փնտրել: *Jerabis III, 3*–ում թագուհու նշանից հետո գտնվում է մի *ḱ*, որը թագուհու հետ միասին այստեղ, նաև *Jerabis I, 2* և *5*-ում և *Fraktin*-ում »մեծն մայր« է հասկացվել Այդպիսով, հնարավոր է, որ ḱ–ն *Trkh*–ի կարդալու ձևի մի տարբերակի համար հնչյունային լրացուցիչ լինի. բայց դից և անձերի գաղափարագրերը ընդհանապես հնչյունային լրացուցիչ չեն ունենում, և *trkho*-ն ամենայն հավանականությամբ, ըստ մի իրական անվան, որևէ մեկնիչ անուն որպես »թագուհի« չի նշանակում:

Այստեղ կարելի է ինձ առարկել, որ այս քննարկումը լրիվ ավելորդ է, քանզի *Trkho*–ի գաղափարագիրը ճանաչված է: Ավելի քան հայտնի »*Tarkūdimmi–Tarkondemos*«-ի առթիվ շատ հանրահայտ գնահատումներից հետևում է վստահաբար, որ այծի գլուխը պիտի *Tarku* կարդալ, և դրանով կարգավորվում են իմ համակցությունները

(իհարկե, եթե դա փաստացի լիներ, տ.վ)), կաղղացածի արտասանությունը պիտի այսպես թե այնպես *Tarku* լիներ, այդ ժամանակ կարելի էր այն մոտեցմանը հանգել, որ քանզի այծը թերևս մեծն դիցուհու սուրբ կենդանին էր, ապա այծի գլուխը նրա անվան խորհրդանիշը կարող էր լինել: Այս մոտեցումը անառարկելի և անժխտելի է, երբ *Boghazköi*–ում մի կենդանու դիմացի մասը, որը մենք մեծն դիցուհու դիմացի մասում տեսնում ենք, մի այծ է (տես HUMANN և PUCHSTEIN, *Reisen*, աղյուսակ X, 63 բնագրում. համեմատիր նաև մի այծանման կենդանուն մեծ դիցուհու ձեռքի վրա և համար դ Կնիքի հարթ մասի հետ): Հետաքրքրական է, որ այծի գլուխը հաթական արձանագրություններում միշտ առկա է, բացի միգուցե *Maraš*–ի Առյուծի արձանագրությունից (ՄԱՐԴ–ի և թեք դաշույնի միջև): Դրա համար կա վերջապես (դատ *Hilprecht-fr Kollation) Izgin IV, 5*–ում մի նստած այծի պատկեր, որի առջևի մասը *Boghazköi*–ի մեծամայր–ի դիմացում գտնվող այծին նմանություն ունի Դրան հետևում է ʾ–š–*mi* (*aššimi* կարելի է կարդալ), *dsari(o) mi - i,* այսինքն` »թագավոր եմ ես (*emi*)« կամ »մեծն (*imio*) թագավոր« Վերն արդեն (*anm.i*) քննարկվել է, որ պարզապես նույն անունը, միգուցե նույն թագավորի համար, ինչպես որ բացահայտվել էր, »*Tarkondemos*« է, և *Izgin IV, 5 -* ը ևս վավերացնում է, որ *ot Trkho*–ն »մեծամոր« անունն է: Բայց արդյո՞ք *ă* վերջավորությունը մի իզականի համար հաթերենի հայկականության հետ կարող է համատեղելի լինել:

Կարելի է հանդուգն համարել այն ելակետը, երբ ես այնքան էլ չեմ խուսափում *At(d)argatis-Derketo* և այլ աստվածներին այս քննարկումների մեջ ներառել (տե́ս BAUDISSON–*ի Herzog* անվանատեսակները *Real encyeclopädie, Atargatis*–ի ներքո), երբ *Derketo*–ն, առանց *a*–ն ատամնայինի առջևում լինելու (դատ *Ktesias, Sterebo*-ի` ed. *Müller*, էջ 667, 42), ամենավաղեմի ներկայացված անվանատեսակը լինի և մեղ ավանդվել է החרעה ע אתרעת -ին կից, երբ ավելի հեռու, Հյուսիսային Սիրիայում և մոտավորապես շատ մոտիկ մի բարձր ու խոր զնահատված պաշտամունքի վայր *Atargatis*–ից, *Hierapolis-Bambyce*-ից, որտեղ մինչև սարդիները *Sargon*–ի ժամանակ հաթերը զերակշռում էին: Այդ դեպքում կարելի է առնվազն ենթադրություն կազմել, որ

սիրիական աստվածուհու նախնական անունը, հաթական *Trkh* անվանն ավելացվելով և իրենց լեզվի իգական վերջածանց *t*–ն բառասկզբում ע–ի ձևով հնչյունափոխելով, עתר–Αδαρ–α = եբրայերեն עשתרת–*Astrate*–ն է առաջանում: Եթե, ըստ տիրող տեսության, עתרעתה դիցանունները עתר ու עתה- ի միատեղումից են առաջացել, ավելի հավանական չէ՞ արդյոք կարծել, որ դա չի բացատրում երկու ձևն առանց ע-ի բառասկզբում, և ոչ *e*–ն *r*–ից առաջ *Δερχετειον, Ατεργατις* և *᾽Ατεργατιον,* տարբերակներում, *᾽Ατεργατειον*–ի համար՝ *Makkab II, 12, 26*–ում, և եթե ոչ ամենակարևորը, ինչո՞ւ ըստ *Strabo*-ի (*ed. Müller 667, 42*), նույնպես և *Hεsychiuς*-ի (᾽Ατταψαδη–ի ներքո), սիրիական עתר–ն δ–ով է գրվել, երբ թերևս עתרעתה–ի ת–ն երբեք չի նշվել ու երևացել, ինչպես և վերոհիշյալ կույգ դեպքերում ևս:

Բնականաբար, քանի դեռ *Tarḫu – Tarkho*–ն որպես հաթական մեծ աստվածուհու անուն չի հաստատվել, իմ ենթադրական տեսությունը օդում կախված կմնա:

Մենք տեղեկանում ենք *Strabo*–ից (*ed. Müller p. 459, 5*), որ Ma–ն Տավրոսի հաթական երկրամասում *Komana*-ի դիցուհու սրբության անունն է, որ կարելի էր առանց այլևայլության հաթական մեծ դիցուհու հետ նույնացնել, ենթադրություն, որի մեջ առկա է մի սխալմունք, և *Ma*–ն, որ թերևս մի դիցուհու անուն է և առաջացել է ավելի հեռու անցյալի *Ma-* »մայր« մի կարճանունից և միգուցե կրճատված վաղեմի և նախնական հայերեն *Mātēr* կամ *Mātir*–ից, որ իրականում նորություն չէ, բայց դրանով հանդերձ՝ նրա իսկական անունը չէինք ունենա: Ըստ *Apollodor III, 14,3*–ի՝ Σανδαχος–ը Սիրիայից Կիլիկիա է եկել և ամուսնացել *Θαναχη*-ի (կամ, ըստ *Hesychius*-ի, *Φαρναχη Μεγεσσαρος, Hyria*-ի թագավորի) դստեր հետ: Եթե այս *Sandakos*–ը Կելենդերիսի հիմնադիր *Tarsus*-ի *Sanda*-ի հետ նույնություն ուներ, և նրա անունը անձնանուն չպիտի լիներ որպես փաղաքշական վերջածանց k–ն (տ.վ.), կարող էր *Pharnak-e* կամ *Thanak-e* լինել, կամ եթե k–ն վերջում լիներ, դա *Sandakos*-ի հետ նույնություն պիտի ունենար: *Pharn-a*-ն, հակառակ իր արտաքուստ պարսկական երևացող անվան, *Pharanake*-ին կամ *Than-a*-ին որպես մեծամոր համար մի անուն կարելի է ընկալել և աչքի առաջ ունենալ:

Բացառված կլիներ, որ *Movers*-ը՝ որպես *Ταναις*- ի հետ կապակցվող առաջին ենթադրյալ հայկական դիցուհու տարբերակ (*Gen. Ταραιδος; Strabo, ed. Müller, p. 1019 u.),* ըստ *Windischmann*-ի (Anahita, *p.8),* հակառակ մեկնությունն ունենար, իսկ ըստ *G. Hoffmann*-ի (Հատվածներ, p. 135)՝ փաստահաբար *Ταναϊδος*–ը մի աղճատված տեսակն է *᾿Αναϊτιδις* –ի կամ չպահպանված *Ταναϊς*-ը՝ մի դիտավորյալ խեղաթյուրված Αναϊς-ն է՝ = *Anahita*-ի:

Ասորական *Indiši(-lim)-ma*-ն Կնիքի արձանագրություններում և ասորական այլ բնագրերում աստվածուհի *Išḫara* է անվանված, և դա *Ramses II*-ի ու Ητε–ի թագավոր *Ητεςερε*–ի միջև հաշտության պայմանագրում հանդես է գալիս որպես Ητε–ի, եթե ոչ *Kidawedene*-ի՝ *Ητεςερε*–ի կնոջ հայրենիքի աստվածություն, դիցուհի *᾿Iзςзḫïrз (Bouriant՝ Recueil de Travaux XII, p. 158* և *160* ու *Sayce, ib XV, p. 2*. տես հետևյալը), այսինքն՝ אסחר, մի *i*-ով *e, ḫ* և *r*-ի միջև, թեպետև *r*–ից առաջ գտնվող հնչյունային տարբերության՝ *Sayce*–ի տարբերակով կարելի է հրապուրվել, որ *Ishara* և *᾿Iзςзḫïrз* նույն անվան համար են օգտագործված, և ըստ դրա՝ կարելի է ենթադրել, որ առաջինը փոխառություն է արևմուտքից, իսկ վերջինը՝ արևելքից, կամ գուցե երկուսն էլ փոխառություն են սիրիականից: Կարելի է ավելի խորանալ և ասել, որ ըստ դրա՝ *Crux- ansata* – ի նման գաղափարագիրը համապատասխանում է *Indiši(-lim)-ma*-ի Կնիքի արձանագրության *Išḫara*-ի անվանը, և այն կարելի է *Išḫara* կամ նման մի բան կարդալ, նույնպես այդ անունը որպես հաթական է բացահայտվում և հավելյալ միացնող օղակ է *Ητε*–ի և *Ητεςερε*–ի միջև, որ հնդեվրոպական հաթերի մեջ ենք տեսնում, և ավելին, թերևս ասորական *Išḫara*-ն *Ištar-Astrate*–ի հետ է նույնանում (K *250, Addenda to Western Asia inscriptions II,49 No 1). Ishara*-ն պարզված է որպես հաթերի մեծն դիցուհու անուն, սակայն դա շատ քիչ է երկու ժողովուրդների ցեղակցության մասին խոսելու համար, դրանով հանդերձ կարող ենք փաստել այն հանգամանքը, որ թեպետ քիչ փոփոխություններով նույնը ասորիների մոտ կարելի է գտնել, բայց, ինչպես ասում են, կարելի է ասորական *Išḫara*-ն կամ ծովերի աստվածուհի *Išḫara*–ն լրիվ նույնացնել *Ištar-Astrat*–ի, ինչպես և *Indiši(-lim)-ma*-ի Կնիքի արձանագրության

*Hati*–ի մեծն դիցուհու հետ, ինչը փաստում է նաև դ համարի ներքո կնիքի վրայի պատկերը: Ավելացնենք, որ նրա ամուսինը դիցապետ է, և նրա պատկերը քանդակված է ամպրոպի սատծու վերևում: Սակայն վերը հիշատակված խաղաղության պայմանագրում պատկերված *ʾӀзçзḫï* νз-ը՝ *Ητε*–ի լեռների դիցուհին՝ *Astrate* մեծն դիցուհուն կից, չնայած *Ητε* երկրի մի սատվածություն է, բայց նրա հետ նույնություն չունի *ʾӀзçзḫï* νз-ն նույնպես մի դիցուհի է *Ητε* երկրի, բայց նա *Išḫara*-ից տարբեր է ու պատկանում է *Kïdзνзnз*–ին, այնպես որ քիչ փաստեր կան պնդելու, որ մի հաթական դիցուհի այս կամ այն նման անուններ իր վրա ընդունի: Այնպես որ այս երկու անունների նմանությունից ոչ մի որոշման չենք հանգում, և երբ *Indiši(-lim)-ma*-ի Կնիքի վրա մի հայտնի գաղափարագրով ասորերենի թարգմանությունում ասորական դիցանվան մի անուն *Išḫara*-ի հետ համընկնելու լինի, դրանից վստահությամբ կարելի է միայն եզրակացնել, որ հաթական դիցուհին ասորական *Išḫara-Istar*-ի հետ կարող է հավասարեցված և նմանեցված լինի, և այն, որ Կնիքը (համար դ–ն) վավերացնում է հաթական դիցուհու անվան համընկնումը հատկապես մեծամոր պարագայում, ոչ մի արդյունքի չի հասցնում, ինչպես դիցուհու անունը՝ *ʾӀзçзḫï* νз–ն, *Htз*–ի հաշտության պայմանագրում նույնպես շատ քիչ է միատեղում երկուսին:

Համելենք, որ ի հետևանս մեր բոլոր քննարկումների՝ կարող ենք արձանագրել. մենք ոչինչ չգիտենք:

Մեծն դիցուհու անվան առնչությամբ կարողացանք որևէ շատ թե քիչ համոզիչ մի եզրակացության գալ, բայց կարելիության չափով ավելի ստույգ է թվում սա երիտասարդ դիցի վերաբերյալ, ում մենք տեսնում ենք *Boghazköi*-ի արձանագրութ-/յան մեջ: Այս դիցը կանգնած է մի հովազի կամ շան վրա (համեմատիր Կնիքի արձանագրությունը. WRIGHT-ի *Empire of the Hittites,* աղյուսակ XVII և XVI Nr. 15f.)՝ մի երկրերան աշտե ձեռքում (PERROT և CHIPIEZ, Histoire de l'art IV, 527): Ըստ *Ammian*-ի *(XIV, 8, 3)*՝ Sanda-ն է հիմնադրել Tarsus-ը, *Dio Chrysostomos*-ը (կարդա XXXIII, p. 16, տող 21, *Dindorf*-ի հատորում) գտնում է, որ *Herakles*-ը՝ *Tarsus*–ի αρχηψοσ–ը, ըստ *ATHENAEUS*–ի՝ Tars–

ական հասարակության գլխավորն է և ըստ *Agathius* II, 24 և NONNUS, *DIONYSIACA XXXIV*, 192- ի՝ Sanda-ն կիլիկիական *Herakles*-ն է: Այսպիսով չի երևում, ու չի կարող որևէ կասկածի ենթակա լինել, որ մենք աշտեավոր դիցի մեջ այս *Sanda–Herakles*–ին նկատեինք, ըստ որում *Sanda*–ն նրա անունը պիտի լիներ. և երբ մեկ ավանդվել է, որ *Tarsus*–ի *Herakles*–ի համար աստուշան է կառուցվել (PERROT և CHIPPIEZ, *Histoire de l'art IV, p.540),* այսպիսով որևէ մի կասկած բացառվում է, որ իրականում մի աստված՝ մարտական աշտեով, *Tarsus*–ում միաժամանակ *Sanda* է կոչվել: Դրա դեմ հավաստի կերպով չի կարելի առարկել, բայց և այնպես Կապադովկիայում հաթական ժամանակներում դա մի երկրորդական հայց է դառնում: Ուշագրավ է, որ *Ivriz*–ի աստծու պատկերով նշանը, որ *Tarsus*–ի տեր כעל חרו–ի հետ նույնություն ունի, բայց այն աշտեավոր աստվածության հետ այնուամենայնիվ ի սկզբանե նմանություն չունի, մի *Eregli=Herakleia* անունով տեղանքի մոտակայքում է գտնվում; դրանից բացի, պիտի որ כעל חרו –ի մի ձեռքում ցորենի հասկեր և մյուսում խաղող քանդակված լինի (BABELON, les Perses Achemenides, աղյուսակ *IV ff.;* PERROT և CHIPPIEZ, *Histoire de l'art IV, 727),* և դա ոչ թե *Herakles* աստվածը, այսինքն՝ *Sanda*–ն է, այլ *ἀρχγός*–ը *Tarsus*–ից (DIO CHRYSOSTOMOS, կարդա՛ *XXXIII, Ed. DINDORF II, 16*): Սրանց պիտի տարբերակել, քանի որ նրանց քուրմը *Tarsus*–ում ամենաբարձր դիրքն էր զբաղեցնում: Հնարավոր է նաև, որ *Ivriz*–ի աստծուն և նույնպես Fraktin-ի և *Boghazköi*-ի արձանագրությունների շարքի առաջինին *Sanda* անունը կարող է հարմար լինել: Այս երկընտրանքից ելքը մեկ ցույց է տալիս այն հանգամանքը, որ *Boghazköi*-ում իր դիմաց ձախում մի ցլի առաջին մասն է երևում, և աստվածը կռվի աշտեով մի հովազի կամ համենայնդեպս մի նման կենդանու վրա է կանգնած, ինչպես սովորաբար առյուծի վրա կանգնած կամ հեծյալ մեծն դիցուհին, բայց *Tarsus*–ում կռվի աշտեով աստվածը մի եղջյուրավոր առյուծի վրա է կանգնած, իսկ դ կնիքի վրայի հինգերորդ մասի հարթ մակերեսին պատկերված է աստծու դիմացի եռաժանին և մի թռչուն՝ երևի մի արծիվ, որ սավառնում է *Herakles*–ի վրա, բայց *Tarsus*–ի արծաթադրամներից մեկի վրայի, այսպես ասած, զոհասեղանի պատկերում կա մի թռչուն՝ թերևս մի արծիվ, թևերը

թափահարելիս, և զուգե նույնպես մյուս կողմում մի արծիվ՝ כעל חרו –ի ձեռքի վրա նստած (BABELON, Les Perses Achemenides, աղյուսակ *V)*:

Տարսուսի Բաղաքային աստվածը, մեծամոր սիրեցյալը, դիցապետի՝ նրա ամուսնու հետ համզտի է նստած՝ միանգամայն բնական ընկալված և նմանատիպմներով պաշտպանված, և ըստ իս՝ այս հակադրությունը՝ բնական ու անկեղծ, բխում է նույնպիսի պատճառներից, որոնք դրանն իր ձուլման և միախառնման կարող էին առաջնորդել (և շատերին արդեն առաջնորդել է)։ Բավականաչափ փաստեր կան այս հարցում արդեն այն հարաբերության, երբ մեծամայրը մի կողմից իր ամուսնու և մյուս կողմից իր սիրեցյալի կողքին է կանգնած։ *Phrygia*–ում նույնպես տեսնում ենք, որ *Attis*-ը *Kybele*-ի սիրեցյալն էր և նրա ամուսնուն լրիվ նսեմացրել ու ասպարեզից դուրս էր մղել։ *Hadad*-ը և *Atargati*-ն՝ սիրիական դիցուհին, *Hierapolis-Bambyce*-ի գլխավոր աստվածներն էին. *Hadad*–ը, որ ամպրոպի աստվածն էր և *Attargatis*–ի ընկերը, *Hierapolis*-ում մի ցուլի վրա նստած է պատկերված (LAJARD, *Rech. S. l. Culte de venus*, աղյուսակ III, B.1.ս. *Lucian*, 1. c. § 31), իսկ *Boghazköi*-ում պատկերված է ամենաառջևում զմնվող մի աստված՝ եռաժանին՝ կայծակի խորհրդանիշն իր ձեռքին, մի ցուլի առաջին մասը իր առաջ։ Շատ հանդուգն չպիտի համարել այն միտքը, որ *Hadad*–ը *Hierapolis*-ում այս սառծուն էր համապատասխանում և նաև սիրիական աստվածուհու ամուսինն էր։ Բայց ըստ Zacharia 12, 11 – ի՝ חרר רמין (רמין =*Rammān*=חרר *)* մի ողբի նյութ, թերևս առկա է այստեղ. Herieapolis-Bambyce-ի ամենամյա (Lucian, De Syria dca § 49) հաստատված պոհասեդանը նույնպես կառուցում էր սիրիական աստվածուհու սիրեցյալը։ Շատ էլ անհավանական չէ, որ ամուսնու թե՛ անունը և թե՛ ինքնությունը սիրեցյալի կողմից դուրս մղված և կլանված լինեին։ Եթե *Hierapolis*-ի, այսինքն՝ արևի քաղաքի աստված *Adad*-ը *Hadad* էր կոչվում, և ըստ դրա՝ վստահորեն Macabius-ը ոդպես արև է նշանակել (*Saturnalion I, 23, 10*, և *17*), *Hadad*-ը ծագումով անառարկելիորեն բեղմնավորման փոթորկի սառծու անունն էր *Hierapolis*–ում ևս (1. c, § 12) և ոդպես այդ՝ կայծակը և ցորենի խուրձը իր ձախ ձեռքում պատկերը պիտի անկասկած փաստի, որ սա արևի սառծու սիրեցյալն է, և

նրա անունը ամուսնու կողմից ներկլանված էր, բայց նրա էությունը մի չնչին ձևով սրա էությանը *Hierapolis*-ում հաղթել էր, ինչն էլ լուրջ առիթ էր դիցապետի և *Tarsus* քաղաքի աստծու միախառնման, քանզի նրանք միասին ամենաբարձր հարգանքն էին վայելում՝ ըստ հետևյալ խորհրդանիշերի.

1) երկուսն էլ կոչվում են *dēi*, այսինքն՝ »տեր« (տ. *Ivriz, 11, 1*: *Fraktin*, Կնիքի արձանագրություն՝ μ–ի ներքո այս գրքում), միգուցե դրանք նույն կապակցությամբ իրար աղերսված լինեն, *Babylon*-ում միաձուլված է քաղաքի աստված *Marduk*-ը *Bēl*, այսինքն՝ »տեր« մականունով համեմատաբար վաղեմի երկնքի աստծու՝ *Bēl*-ի հետ, այնպես որ նրա անձնական անունը այս մեկի վրա էր տեղափոխվել.

2) մյուս պարագայում *Nippur*-ը, նախկին երկնքի *Bēl*-ը, ինչպես *Hilprecht*–ն է ընկալում, *Marduk*-ի հետ միասին բարդ բառակապակցված անուն է կրում (*imgur- Marduk* և *nimit(d*) – *Marduk*: *Western asia inscriptions Band II, 50, 28 f.;* և համապատասխանող *Babylon*–ական պարիսպներ կոչված *Imgar-Bēl* և *Nimid(t)*–ը ներկայացնում է *Nimitti-Bel*-ին).

3) այսպիսով կարելի է անառարկելիորեն ընդունել, որ Sanda անունը երկու նախնական տարբեր աստվածների է ներառում, և սա դժվար թե երբևիցե վիճելի լինի։ Ինչպես մենք վերը տեսանք, անհավանական չէ, որ *Sanda*–ն (*Šanda)* ծագումով աստվածապետի անուն է և ամենաճիշտ հաթական *Herakles*–ի համար ավելի մեծ հենակետ չի գտնվի. և հայերեն *šant, šantʿi* և *šand*-ը=»շանթ կայծակ«–ով համդերձ *Sanda*–ն ևս լիարժեքորեն կարող է բնականաբար հաթական *Herakles*–ի նախնական անունը եղած լինել.

4) *Boghazköi*-ի երկրորդ դիցուհու անվան առիթով (որի ամենա– սովորական գաղափարագիրը համենայն դեպս մի բայուկ է՝ հարթ ձեռքով և բթամատը դեպի ցած) նշենք, որ դրանով չենք կարող որևէ հավաստի ենթադրության հասնել։ Ավելին. *Boghaz-köi*-ի մյուս աստվածներից մնացած արձանագրություններում հիշատակված Կիլիկիայի հունական ժամանակվա՝ այս հարցին կապված արձանագրությունները, ինչքան ես եմ նկատել, ոչ մի մեկնաբանություն ու հիմք չեն առաջարկում.

5) Հին ուխտի հատվածներից՝ Թագավորաց II, գլուխ 17, 30–ը կարող է մեկ մի ցուցմունքով օգնել կարողանալ։ Դրանցից է אשׁימא– *Aštmā*-ն, որ ասորական *Sargon*–ի ժամանակ (*722-705*) գլխավոր աստվածությունն էր *Hamā-Hamath*-ում։

Բառավերջի ā–ն ըստ երևույթին իգականություն է նշանակում, թեպետև կարող է այս անունը արամեերենից ստացված լինել կամ միգուցե դեռևս հաթա–հայկական ժամանակից արդեն եղած լինել. դրանից ելնելով՝ կարող ենք ասել, որ *Ασιμαθ*-ը *Septuaginta*-ի (ըստ *Lucian*-ի *Ασεναθ*-ի) մեջ սեմական *t*–ին պիտի համապատասխանի։ Ապա հիշատակվում են *Hamath*–ի թագավորներն աստվածություններից՝ իրենց անուններով, միայն թե նրանց խորհրդանիշը՝ բռունցքը դեպի վեր բութով (*Hama I – III, V, ı*) ենթադրաբար մի աստվածուհի է՝ թերևս אשׁימא անունով, אמ բաղադրիչը Strabo-ն *Ma* է համարել, ինչպես `-א *Aši*-ի, Թերևս սա ևս ընդունելի լինի, այսուհանդերձ մենք չենք հակաճառի Միայն Ասորիքի *Salamenassar II* – ի օրոք (860-825), համաձայն այն ժամանակվա *HAMATH*-ի թագավորի անվան՝ *Irḫuli(e)ni*, կարելի է որոշել, որ քաղաքը, կարելի է ասել, ոչ սեմական տիրակալի իշխանության տակ էր։ Ասորիների *Tiglatpileser III*–ի (*745-727*)-ի օրոք *HAMATH*-ի թագավորներից մեկը, որը կոչվում էր *Ini-An*, այսինքն, ինչ խոսք, անկասկած *En(i)-il(u)*= עיכאל(տես *A. Bloch, Phönicisches Glossar p. 50*) ընկավ, ինչպես և ողջ *HAMATH*-ը, սեմականների ձեռքը, և դրա պատճառով, մեր կարծիքով, *Hama - Hamath*–ի բնակիչների կորիզը, բացի սեմականից, ոչ մի ուրիշ բան չի կարող երևակայելի լինել։ Այսպիսով, նույնը պիտի ենթադրեինք *Sargon*–ի ժամանակ, որը թագավորում էր *Tiglatpilesere III*-ից հետո, *Hamath*–ի քաղաքային աստվածության անունը ավելի սեմական, այսինքն՝ տվյալ դեպքում արամեական, քան հաթական է եղել, և ըստ այդմ՝ անհավանական է, որ אשׁימא–ը հաթական անուն լիներ, և նույնչափ անհավանական է, որ սա դեպի վար բռունցքի նշանին համապատասխան լիներ։

## Հաթական աստվածներ

Պաշտամունքի հիմնախորքում, ինչպես Հյուսիսային Սիրիայում և Փրյուգիա– յում, առնվազն ավելի ուշ ժամանակներում մեծամայրը պիտի կանգնած լինի. եթե *Boghazköi*-ում նրա ամուսնու դիմաց մի ցուլի առջևի մասը, իսկ *Üyük*-ում մի ցուլ (Perrot u. Chipiez, *Histoire IV, 668*) է պատկերված, աստվածային պաշտամունքը մասնակի է դառնում, իսկ Basilius-ի *De Vita St. Theclae II, 15* - ից երևում է, որ *Δαμαλις*, այսինքն՝ »երինջ«–ը, *Sanda- Herakles*-ի ամուսինը կամ սիրեցյալն էր: Սա էլ ողպես մի եզ էր պատկերված, այնպես որ բացի եզից՝ Üyük -ում պաշտված աստվածուհին, որ ինչպես Fraktin-ում, մեծամոր նմանությամբ է ներկայացված (*Perrot u. Chipiez, I.c, 678*), հենց այս մեծամայրը պիտի լինի: Այն, որ նա աստվածուհի է, որին մենք *Fraktin*–ի արձանագրության աջ կողմում տեսանք, անգամ այն, որ բազմիցս Կնիք η–ի վրա նա ներկայացված է, արդեն մենք որոշել ենք: Բայց այնուամենայնիվ կարծում ենք, որ հավելյալ պարզաբանումների կարիք կա: Այսպես. օրինակի համար՝ Jerabis-ում (Perrot und Chipiez, Histoire IV, 808), Եփրատին կից *Biredjik*-ի թագավորի ժայռաքանդակի վրա (տես *Transactions of the society of Bibl. Arch., VII* էջ *251*-ի սկզբում) մի պատկեր է երևում, որ կանացի գլխարկ ունի գլխին, հայելի (կամ զավազան ?) և մի իլիկ ձեռքում ու թևավոր արեգակի սկավառակը՝ արքայական պատվանշանը, գլխի վրա, ինչպես նաև մի կին, ավելի շուտ՝ մի թագուհի, որը շատ ակնհայտ հիշեցնում է դիցուհի *Išḫara*-ին՝ պատկերված Կիպրոսի *Indilim-(ši)-ma* կնիքի վրա, և սիրիական աստվածուհի *Atargatis*-ին *Hierapolis-Bambyce*՝ Հյուսիսային Սիրիայում, գայիսոնը մի ձեռքում և ճախարակը մյուսում (*Lucian, De Syria Dea §32.)*: Այնքան էլ շատ սխալված չենք լինի, եթե դրա մեջ »թագուհի« (*Fraktin* և *Jerabis I, 2* և *5* ու *III*, *3*) և »մեծամայրը« տեսնենք: Կամ նա իլիկն է կրում լոկ իր կանացիությունը և ոչ ավելի շատ իր սեփական խորհրդանիշը

արտահայտելու համար, կամ խորհրդանշում է, որ բաբելոնա–ասորական դիցուհի *Ištar*-ը ճախարակ ուներ իր մոտ և շրջապատված էր թել մանողներով, որոնցից (*nāš Pilakki*) կողմից նաժշտական խնամք էր ստանում: Maraš–ի հայտնի հարթաքանդակի վրա իրար դիմաց երկու կանայք են պատկերված (HUMANN u. PUCHSTEIN, Reisen աղյուսակ XLV), աջ կողմում նստածը *Biredjik*-ի թագավորի նման մի հայելի ունի իր աջ ձեռքում և մի իլիկ՝ մյուսում, իսկ գլխի վրա՝ նույնատիպ զլանաձև գլխի փաթթոց, ճիշտ ինչպես *Biredjik*-ի թագավորը: Մինչ այժմ հակվածություն կար Maraš-ի (HUMANN u. PUCHSTEIN, Reisen աղյուսակ XLVII), *Senjirli*-ի (աղյուսակ *XLV*, կրկն.) և *Saktschegözü* –ի (կրկ. էջ *376*) քանդակները ներկայացնել որպես հոգեհացերի և մատաղների պատկերներ: Բայց և այնպես եթե *Biredjik*-ի պատկերում երևում է մի աստվածուհի՝ թերևս մեծն մայրը, ապա կարծում ենք, որ վերոհիշյալ *Maraš*–ի հարթաքանդակների մեջ էլ նա կա: Բացի դրանից՝ եթե ըստ *HUMANN u. PUCHSTEIN 1.c.* աղյուսակի՝ այս դատողությունը հաթերից է ծագում, պիտի եզրակացնել, որ այս և նման քանդակները և ամենից առաջ Fraktin-ի վերոհիշյալ հարթաքանդակը, ըստ իմ այժմյան համոզմունքի, հոգեհաց չեն կարող ներկայացնել, ինչպես նաև այն, որ պատկերների կանգնած աստվածները, որոնց դիմաց նստած աստվածներն են զոհվում, որպես մատաղ անող մարդիկ են ներկայացվում: Այնուամենայնիվ՝

1) մեծն աստվածուհու ներկայության գերադասությունը հատկապես այն է, որ այնտեղ նա հաճախակի պատկերավոր է ներկայացվում. նրա էության առթիվ տեղեկանալ չի լինում կամ էլ չնչին է լինում. նա *Boghazköi*–ում, ինչպես Փռյուգիայի *Kybele*–ն, »մեծն աստվածուհին« *Maraš*–ում, »մայրը« *Fraktin*–ում »մեծամայր՝ *Hātē-Hāti* երկրի«, »մեծամայր« »թագուհի« է: Ըստ մի ավելի ուշ և վերը մեջբերված աղբյուրի (BASILIUS, De Vita S. Theclae II, )՝ ներկայացրած »երինջ«–ը՝ *Δαμαλις*-ը, թվում է, թե *Sanda*–ի ընկերուհին է, և այդտեղ եպ–ը դիցապետի մի խորհրդանիշն է, այնպես որ կարող է առավելապես »երինջ«–ի հետ »մեծամայր«ը ընդհանրություն ունենալ՝ նախադրելով այն, որ դիտողություն է պահանջում.

2) Իմ պրպտումները բերել են այն համոզման, որ Կիլիկիայի և *Gürün*–ի երկու արձանագրություններում դիցապետը միայն երկու դեպքում է իր անունով կոչվել: Համենայնդեպս ես ոչ մի տեղ դրա գաղափարագիրը չեմ տեսել: Բայց կարող է »մեծն կամ հզոր *i-a(-i)*«–ի ներքո և կապակցությամբ հասկանալի լինել *ś-t(a)r*, այսինքն՝ »պավակ«, թագավորը Jerabis III, 2- տող 3–ի արձանագրությունում, ինչպես Կիլիկիայի թագավորները *ś-t(a)r*-ը դիցապետի (դրա առթիվ տես *Hamā I* և *II, 3; III, 2; V, 2; Jerabis III, 2* և *Maraš III, 2)* նշանակությամբ են օգտագործվել: Կիլիկիայի թագավորների արձանագրություններում, որոնցով նրանց ծանոթությունը մեկ է հասել, և նրանց հանդիպում ենք ամենուր՝ թեպետև հենց այս *Schaleninschrift*-ում առանձին, բայց ուրիշ երկուսում (մեկը՝ *Bulgarmadan*-ում, մյուսը՝ *Bor*–ում) երկրորդ տեղում է միշտ անվանված: Դիցապետը *Boghazköi*-ում ներկայացված է մի գավազանով և մի արքայացուպով կամ մի մահակով (բայց արդյո՞ք որպես շանթող), ŋ կնիքի վրա՝ գավազանով և միզուցե եռաժանին դրա վրա (ապա որպես կայծակի սատվածը), *Fraktin*-ում՝ որպես մի կեռ ցուպով թագավոր, *Ivriz*-ում՝ խաղողը աջում և մի ցուպ, ենթադրաբար թերևս մի հասկ, իր ձախում, *Tarsus*-ից մի մանրադրամի վրա (տես *Babelon*, *Les Perses Achemenides,* աղյուսակ *V f.*)՝ ցուպով (արմավենի), հասկ ու խաղող՝ որպես հանդ ու արտերի օրհնություն, ինչպես *Hadad*-ը՝ նախկինում բեղմնավորող փոթորկի աստվածը *Heliopolis*-ում, հասկերը իր ձախում (Ma– crobius, Saturnalien I, 23, 12): Նրա խորհրդանիշը եռաժանին է (*Boghazköi*, Կնիք ŋ–ի վրա), քանզի նա կայծակի աստված է, ինչպես *Hadad*-ը *Heliopolis*-ում կայծակն իր ձախում էր պահում (*Macrobius* 1.c,) Մի երինջ ուղեկցում էր նրան (*Boghazköi*-ում), չէ՞ որ նա որպես այդպիսին էր նկարագրվում *Üyuk*-ում. և դրա պատճառով միգուցե երինջի ծնելու կարողությունը աչքի առաջ ունեցած լինեին, բայց դրանով մեկտեղ նա փոթորկի աստված է և ըստ այդմ՝ պիտի որ որոտացող ամպրոպի աստծուն ներկայացներ ու նկարագրեր ամպերին, որոնցից կայծակներ են որոտագին իջնում և պտղաբեր անձրև վար հեղում:

Այնուամենայնիվ, հաթական մեծն դիցուհու ամուսինը ևս մի փոթորկի աստված է և ըստ այդմ՝ երկնքի տերը, ինչպես սիրիական մեծն դիցուհու ամուսինը, ու թե *Htε*–ի թագավոր *Hτεζειε*–ն և իր ազգակիցները հաթեր են եղել, թե ոչ, համենայն

դեպս մեր մոտեցումը հաստատվում է, որ նրանք շուրջ *1300* թ. մ.թ.ա. *Ramses II*-ի և *Ητεςετε*–ի միջև կնքված պայմանագրում որպես *Ḫtз–Ḫātē*-ի երկրի աստվածներ, որպես առաջին կարգի դիցեր են հիշատակել Reʿ (արևի աստված)–ին՝ որպես *ʾI-r-n-nз, Ḫtз*–ի մայրաքաղաքի երկնքի տեր և *Sωth*- ին՝ որպես երկնքի աստված (երկնքի աստված *Sωth*-ը *Ḫātē*-ից):

Աստվածուհիների մեջ որպես առաջինը՝ *Ḫātē*-ի *Astrate*-ն է հիշատակվում արձանագրություններում (*Receuil de Ttavaux XIII, 157 9 159*), իսկ դիցապետին կոչում էին »*Ḫātē*-ի թագավոր« (*Fraktin*), հավանաբար »տեր« (Fraktin և Ivriz II; տ.վ. ենթադրաբար և *Sy(u)ennesi(s)* (*Ivriz I, Boghazkoi*; (տ.վ.) և ավելի հեռու (մեծն կամ հսոր) »*ṕ(á)– ṕ(á)*« (*Bulgarmaden 2*); *Bor 2* և *3*): Սա թերևս »հայր« նշանակելով՝ ենթադրաբար *ṕ(á)–ṕ(á) (–ṕ(á)–(á)(Ivriz I, 1)* գաղափարագիրը »հայր«–ի (»հայրիկ *väterchen*«), *Ivriz*-ում ունեցել է իր վրա պատվի նշանը, որը այլապես »աստված«, »թագավոր«, »թագուհի«, »տեր« և »մայր« է արտահայտում (*Gürün II*, 2 և այլուր այս գրքի մեջ): Արդյոք դիցապետը *Gürün Ḫātē-Hati*-ի »մեծ աստվածն « է կոչվում, թե ոչ, անորոշ կմնա, և կապված է վերջավորությանը որպես *i-á(-i)m* ՝ նշանակելով »մեծն, (հսոր) *i-á(i)*«:

3) Boghazkoi-ի աստվածների շարանի մեծն աստվածուհու հետևում քայլում է կռվի աստվածը՝ մարտի աշտեն ձեռքում. մարտիկը՝ հույների *Herakles Sanda*-ն, որ մեծն դիցուհու շքախմբի մեջն էր գտնվում և նմանվում փրյուգիական և սիրիական պաշտամունքներին՝ մեծն դիցուհու սիրեցյալ լինելը անհերքելի դարձնելով:

Հետևաբար մարտիկը ապագայում *Sanda* անվանվեց՝ համարվելով մեծն դի–ցուհու սիրեցյալը: Այս է այն ամենը, ինչ մենք վստահորեն գիտենք: Եթե նա *Boghazköi*-ում մեծն դիցուհու նման մի կենդանու վրա է կանգնած, նույնպես *Tarsus*–ում առյուծի վրա է կանգնել, եթե առյուծը աստղական *Istar*-ի կենդանին է, և իր ճաճանչող աստղը՝ Վեներան, որ վառ շողում էր հուրհրալով, երբ վախն ու փայլը աստղիների համար իրարից անբաժանելի գաղափարներ էին, *Tarsus*–ում *Sanda - Herakles*-ը մի կոհակիկման սեղանին այրվում էր, այդպիսով կարելի է ենթադրել, որ նա, ինչպես հունական *Herakles*-ը, ճաճանչող արևն է, որ իր սեփական տապի մեջ այրվում և սպառվում է:

4) Մյուս աստվածների էության ու բնության մասին ոչ մի բան չգիտենք:

5) Թագավորները նույնպես վայելում էին աստվածային պատկառանք ու հարգանք, միաժամանակ նրանք աստվածներ էին. *Boghazkoi*-ի աստվածների շարանում (*PERROT* և *CHIPPEZ, Histoire de l' art IV,* աղյուսակ *VIII, D,* էջ 624 և 625–ի միջև; *WRIGHT, Empire of the Hittites,* աղյուսակ *XXIV; HUMANN* և *PUCHSTEIN, REISEN,* աղյուսակ IX), թագավորը պիտի թևավոր արևի սկավառակը իր գլխի վերը ունենա, և ինչպես աստվածների գաղափարագրերի վրա առկա է, նույնպես նրա անվան բառախմբի վրա աստվածային նշանը պիտի ակներև գոյություն ունենա՝ որպես նշան նրա աստվածության. և հնարավոր է, բայց նվազագույն հավանականությամբ, որ պարզապես նրա անվան բառախմբի առաջին նշանի որոշիչը ինքնըստինքյան մի աստվածային խորհրդանիշ է:

*Maraš*–ի Առյուծի արձանագրության մեջ մի կենդանու վրա կանգնած է մի կերպար՝ երկար հագուստով, թերևս մի թագավոր, թագուհի կամ դիցուհի, համենայն դեպս մի դից, բայց առանց սրածայր երկար գլխարկի, ապա մի թագավոր, միգուցե մի թագուհի կամ մի դիցուհի, բայց ոչ իսկական աստված՝ կեռ ցուպը իր ձեռքին, այնուհետև մի թագավոր կամ մի աստված: Այս կերպ, ըստ նրանց, ինչպես մենք ենք հասկանում, »մի թագավոր«: Այստեղ տեսնում ենք նաև մի թագավոր՝ մի կենդանու վրա, որը այլ կերպ աստվածների նախապատվությունն է. ո՞վ է այս թագավորը: Մենք կարող ենք դա որոշել: Ըստ վերոհիշյալի՝ հաթերենի գրությունում առաջին տողը ընթանում է աջից ձախ, որպեսզի ոչ մի արձանի չուղեկցի, այլապես կանոնը այն է, որ տողը դեպի այն կողմն է ընթանում, ուր արձանն է երևում. և եթե Առյուծի արձանագրությունը այդ կենդանու վրայի պատկերի հետ գործ չունենար, դժվար թե արձանագրությունը ձախից սկսելու կանոնին հակասեր: Առաջին տողի ուղղությունը բոլորին պիտի հավատացներ, որ արձանագրությունը առնչվում է այդ պատկերին: Դա սկսում է »ես եմ«-ով և նույնանում է *Gurgum*-ի թագավորին և *Markaš - Marʿaš*–ին. կենդանու վրայի պատկերը սրան է ներկայացնում և մոտավորապես մի աստվածություն է:

Աստվածանունների առնչությամբ նկատենք, որ *ś-ṫ(a)r*-ը կապվում է մեծն աստծո և դիցուհու *(Bulgarmaden 2, Bor 2, Schaleninschrift, Fraktin;* համեմատիր *Jerabis III,*

*3)* անունների հետ և նշանակում է »կավակ« և ոչ թե հայերեն *str-uk*–ի պատճառով՝ »ճորտ«, մանավանդ որ Կիլիկիայի թագավորները մեծն աստծու (*Sanda*)-ի կավակներն էին կոչվում, և թագավորը »աստվածուհու կավակ« անունն է կրում, այնպես որ դա համաձայն է վերոհիշյալ քննարկությանը, ուստի և աստծու կավակները բնականաբար աստվածային էակներ էին:

Այսպիսով, ավելի քան մերժելի է *r = aro* »մարդ« վերծանումը դիցանունների կապակցությամբ, և ենթադրաբար մի դիցուհու նկատմամբ *(Hamā I-III, 1* և *Bor 2), »մարդ«*–ը »ամուսին« հասկացությամբ անվանել:

## Սիրիական կրոնների ազդեցությունը հիթիթների վրա

Առաջավոր Ասիայում ամենահինը փոթորկի աստծո կրոնն է, որ վաղեմությամբ ամենազերադասելին է մնացած աստվածների հավատալիքներից: Շուրջ 1400 թ. մ.թ.ա. եղել է և ինչպես մեզ տեղեկացնում են *Mitanni*–ից *El-Amarna*–ի Եգիպտոսում գտնված նամակները (*Keilinsch. Bibliotek V, No 16, 33; 17, 15 և այլն*), փոթորկի աստված *Tešupaš*-ը *Mitanni*–ի սահմանակից Սիրիայում գլխավորն էր բոլոր աստվածներից. *շուրջ 1100 թ.մ.թ.ա.* գտնում ենք *Tiglatpileser*-ի իշխանության ներքո Տիգրիսի վերին մասում՝ մոտավորապես *Diarbekr*–ից քիչ հյուսիս, չորս արքայանուններից երեքը այս անունով միախառնված, որտեղ *Tešupaš*–ի առաջնությունը միանշանակ է: Հայերի նախորդ–ների մոտ Հայաստանում *Teišebaš = Tešupaš*-ին *առնվազն* աստվածների երկրորդ աստիճանակարգում էին դասում (*Journal of the R. As. Society, N.S. XIV p.516*, 15 f.; *525, 13* և այլն), մինչ փոթորկի աստված הדד – *Hadad*- ը գտնվում է *šamʾal* (*senndjirli*) *Amanus*-ից

արևելք, Հյուսիսային Սիրիայում, ըստ արձանագրությունների՝ բոլոր դիցերի գագաթում (*Mitth. Aus d. orient* sammal. Բեռլինի կայսերական թանգարան, տետր *XI, p. 51* և *68*; աղյուսակ *VII* և *VIII*): *Hadad-ը* սիրիական աստվածուհու ամուսինն է *Hierapolis-Bambyce*–ում *(Macrobius, Saturnalien I, 23, 18;* BAUDISSIN, HERZOG–ի *Realencyclobädie*[3], *Atargatis*-ի ներքո), որտեղ էլ աստվածների գերագույնն է. *Hadad*–ը, ինչպես անունից երևում է, Դամասկոսի թագավորների աստվածն էր. նա նաև սիրիացիների մեծն աստվածն էր (*MACROBIUS, SATURNALIEN I, 23, 18*) և ըստ այդմ՝ Ասորիքի Salamanassar II-ը, երբ դեպի *Haleb-Aleppo* ՝Հյուսիսային Սիրիա էր մեկնում, փոթորկի աստծուն՝ այսինքն՝ բնականաբար *Hadad*–ին է կոհաբերություն մատուցում (*Monolith II, 87*):

Դեպի հյուսիս՝ սեմական շրջաններին սահմանակցող վայրերում, աստվածների գլխավոր, նույնն է, թե երկնքի տեր ու փոթորկի աստվածը, ինչպես սեմական Սիրիայում, նույնպես և ենթադրաբար ի սկզբանե բոլոր սեմականների մոտ, יהוה = Jahveh-ը անկասկած հրեաների փոթորկի աստվածն է: דָּגוֹן – *Dagon*-ը պաղեստինցի–ների մոտ և ասորական *Dagan-Bel*-ը *(m. Kos-mologie p.453 f.)* համապատասխանում է արաբերեն دُجُّنَ = »ամպապատում« և եբրայերեն = דָּגָן» հացահատիկ«–ին (համ. *WELLHAUSEN, SKIZZEN III, 170),* ավելի ուշ շրջանի արաբերենից երևում է, որ اَلْبَعُّلُ – el-baʿlu-ն համապատասխանում է քանանական בעל(ה) = *Baʿal*-(ը)=»տեր, տիար«–ին, որ խկությամբ և ծագումով տիեզերքի տիրոջ ու անձրևի աստվածն է (համ. *WELLHAUSEN*, 1, C.), իսկ ասորական *BEL*-ը նույնացվում է շումերական օդի աստծու՝ *En-lil*-ի հետ:

*Hadad*–ի կինը *Hierapolis-Bambyce*–ում, ինչպես *Heliopolis*–ում *Atargats*–ը, ասորական *Astrate*–ն և *Ašratu* - אשרה- *Ašera*-ն, մի ուրիշ *Astrate* մի ուրիշ փոթորկի աստծու ամուսինն է. դա հայտնում են մեկ ասորական բնագրերը *A-mur-ru* աստվածը՝ »նա, որ *Amurrā–Amurra*–ից է«, այսինքն՝ արևմտյան մասերից, ուղղակի Եփրատից դեպի արևմուտք գտնվող *Amurru*–ի՝ Լիբանանի երկրից, կամ արևմտյան հողմերի աստվածն է, »սարերի տերը«, *Ašratu*–ի ամուսինը, դաշտերի կամ հանդերի տիրուհին: Ես *Liter. Centralblatt 1896-in No 50, sp. 1803;* և *Zeitschr. f. Assyr XI 305*-ում անդրադարձել են այն հարցին, թե արդյո՞ք կարելի է *Amurrū* և *Astratu*–ում արևմտյան

երկրների աստվածությունները տեսնել: Ես կարող եմ այս հարցին անմիջապես պատասխանել. *St. Petersburg*–ի Էրմիտաժում գտնվում է մի կնիքի գլան, որի վրա պատկերված է մի արձանագրություն, ուր առկա են պարզապես երկու դիցանուններ՝ արական և իգական SAYCE–ը. որ դրա մասին *Zeitsch. f. Assyr. VI, 161*–ում հոդված հրատարակեց, առաջինը կարդաց *Ra–ta–*(?)*–nu-um*, և երկրորդը՝ *Aš-ra-tum*, բայց կնիքի գլանի վրա *ta*–ն գոյություն չունի, և *Ra*–ից հետո առկա է մեկ ծանոթ, նաև մի քիչ փտած նշան, որ կարող էր դրա հետևից *ma* և դրանից հետո *a* կարդացվել, *Ra-ma-a-nu-um,* այսինքն, բնականաբար, *Rammānu-* »դղրդացող, շանթող«, χεραυνιος, որ Ասորիքի փոթորկի աստվածն է, ում անունը սիրիացիների մոտ արմատավորվել է, եղել է *Ašratu*–ի ամուսինը: Սա էլ հավանաբար քամու աստվածն էր, բայց ոչ արևմուտքի հողմի աստվածը. ու դա նշանակում է, որ *Amurrū*–ն՝ *Ašratu*–ի ամուսինը, »արևմուտքում բնակվող« է և, հետևաբար, սերում է արևմուտքից, այնպես որ նա այնտեղի բնիկն է համարվում և ըստ այդմ՝ אשדה–*Ašera*-ի հետ նույնանում է, և աստվածների կույզը՝ փոթորկի աստվածը և *Ašratu*-ն, »արևմտավայր«–ի բնիկն են և ոչ Բաբելոնի: Այժմ տեսնենք, թե ինչպես է կոչվում փոթորկի աստվածը »արևմուտքի երկրում« և միզուցե Լիբանանում. ասորա–բաբելացիները նրան կոչում էին »լեռների տիրակալ«, և դա պիտի נעל לנון–ն լինի (*Corpus inscr. Semit I, 1, No 5*)՝ Լիբանանի (*ba'al*) տերը נעל – *Ba'al*–ը՝ Լիբանանի *Ašērā*-ի ամուսինը, սերում է փոթորկից. վերից տեղում է անձրևը, և ջրերի հորձանքը արգասավորում է դաշտերը: Դրանից առաջանում են փոթորկի աստվածը՝ լեռների տիրակալը, և *Ašratu – Ašērā* հանդերի աստվածուհին: Ըստ *Macrabius* (*Saturnalien I, 23, 18*)-ի՝ *Atargatis (Adargatis)*-ը երկիրն է »ամորիթուհի«. մինչ *Ašratu – Ašērā*-ն՝ »հանդերի տիրուհին« է, որոնք համապատասխանում են սիրիական փոթորկի աստծուն՝ Hadad-ին և նրա »տիկնոջը«՝ *Atargatis*–ին:

Սիրո և պտղաբերության աստվածուհին Ասորիքում և Բաբելոնում ունի մի սիրեցյալ՝ *Tamuzu(!)*, որ փյունիկեցիներում կոչվում էր *Adonis*, սիրիական աստվածուհուց նույնն են տեղեկացնում (*Diodor II, 4*): Մենք արդեն վերը խոսել ենք, պարտադրյալ *Zacharia 12, 11*–ից մեջբերումով, ամեն տարի *Hierapolis – Bambyce*–ում կանգնեցրած

կոհակիկման սեղանի և *Hierapolis*-ի մասին, որպես մի կենտրոնական հավատքի վայր, ինչպես նաև նախնական փոթորկի աստված *Hadad*–ից, բայց *Macrobius*–ը փաստարկում է, որ Hadad–ի անունը արևի աստծու անվանը արտամղել է: Դրա հակառակն է առնվազն այն համզամանքը, որ արևի աստվածն ինքը հենց նույն փոթորկի աստվածն էր, և յուրաքանչյուրը մի ժամանակ սիրիական դիցուհու սիրեցյալն է եղել: Դեռ ավելին. դրա վավերացման համար բավական է մեր ենթադրությունը, որ միգուցե *Deles*–ում (տես BAUDISSIN *in* HERZOG'S *Real-encyclopadie, Atargatis*-ի ներքո, էջ 174) *Tyr*–ական *Herakles*–ում, արևի աստված *Hadad*–ի և *Atargatis*–ի հակառակ կողմում թերևս մի կրոն գոյություն ուներ: Այդ մասին տեղեկանում ենք LUCIAN–ից (*De Syria Dea § 73*), որ *Hierapolis*–ում *Zeus*-ի և *Hera*–ի, այսինքն՝ *Hadad*-ի և *Atargatis*-ի պատկերների միջև երրորդն էլ գոյություն ուներ, որը կոչվում էր σημἡον, այսինքն՝ »նշան«. այս նկարագրությունը թերևս նշանակում է, որ այս աստծու պատկերը իր նախնական անունը կորցրած է եղել, մինչդեռ այստեղ աստծու էությունը *Hadad*–ից է վերցված եղել, կամ BAETHGEN *(Beitr. Z. Semit. Rel. p. 73)*–ը ճիշտ պիտի ընկալել, որ LUCIAN–ի σημἡον –ը մի թյուրիմացության վրա է հիմնված, ուր նա կամ אתע (Athē) աստծու անունը սիրիական աստված אתא (*āthā*)– »նշան«–ի հետ շփոթել է, և երրորդ աստվածությունը, որը Հադադ և Ատարգատիս–ի հետ առնվազն մի անգամ մոտեցել է և արևի աստծու նախադրյալն է եղել, միայն סימי Simi (ē) անունը Սիրիայի թագավոր *Hadad*–ի մի դստեր համար է օգտագործվել (*CURETON, SPEC.SYR. P.25, 10; CF. Corp. inscr. Lat. III, 159)*, որին, ըստ NÖLDEKE–ի, *(Z.D.M.G, 42, 473)*, համապատասխանում է *LUCIAN* - ի σημἡον –ը: Սա վերին աստիճանի կասկածելի է թվում, բայց Սիրիայի դիցերի երրորդությունը մի նախադրյալ չէ, քանզի եգիպտացիների մոտ (տե՛ս W.M. MÜLLER, *Asien and europa p. 315*) պատկերվում է սիրիական դիցուհի *Kdš*–ը, որը կանգնած է մի առյուծի վրա և համապատասխանում է *Atargatis*–ին, որտեղ մշտապես *Ršp*-ը (կարդա *Raššap" ?*)՝ »շանթի աստվածը«, վաղեմի *ithyphall*–ական աստված *Min*–ի հետ կազմում են մի երրորդություն: Բայց Հյուսիսային Սիրիայում և ավելի հյուսիսի տարածքում 1300 թ. մ.թ.ա. անհատու կերպով կրկին նկատվում են այս երրորդությունները, որոնց մասին մենք վերը արդեն մատնանշել ենք *Ramses II* և

*Ḫtзsзrз*-ի միջև խաղաղության պայմանագրում, որտեղ *Ḫtз-Hātē* – ի աստվածների առաջնային տեղում հիշատակված են *Reʿ*–ն՝ արևի աստվածը, որ տիրակալն է երկնքի, *Reʿ*–ն *ʾI-r-n-nз*՝ *Ḫtз*-ի մայրաքաղաքի և *swth*–ը՝ երկնքի տիրակալը *Ḫtз*-ից, ինչպես նաև աստվածուհիների մեջ որպես բարձրագույնը *ʿ–n-t-r-t* (կարդա *ʿ–s-t-r-t*), այսինքն՝ *Ḫtз*-ի *Astrate*-ն, և սրանով ունենում ենք արդեն *1300* թ. մ.թ.ա. Սիրիայում և նրա հյուսիսում բարձրագույն դիրքը՝ արևի աստծուն, *Ḫtз*-ի երկնքի տիրոջ *swth*–ին՝ երկնքի տիրակալին և մի դիցուհու, ինչպես *Astrate*-ն, մի եռյակություն, որը մենք կարող ենք Սիրիայի պարագայում ավելի ուշ ամրագրել, և *Ḫtз*-ն ու *Ḫtзsзrз*-ն հաթացի են եղել, թե ոչ, այնուամենայնիվ անկարևոր է դառնում:

Այժմ մենք գտնում ենք նույն եռյակությունը *Boghazköi*–ում. երկնքից առաքվում է փոթորիկ, և երկնքի աստվածը իր անձրևը վար է թափում՝ ամուսնանալով մեծն դիցուհու հետ, և ծնում է կյանքն ու սփռում օրհնություն երկրի վրա:

Սիրո դիցուհին՝ ամենածնողը, երկնքի տիրակալի կողակիցը ինքնին ավելի հասկանալի կապակցություն չի ստեղծում, բայց առանց արևի կյանք չկա: Արևը նույնպես ծնում է, և պիտի որ նա »մեծն դիցուհու« հետ միանա, դրանով ամեն տարի բուսականությունը ծիլ տա, դեպի վեր բողբոջի, որով բովանդակ աշխարհը կհաստնանա. և դա ոչ պակաս ապշեցնող է, քան մի եռյակություն՝ երկնքի տիրակալը, բերրիության ու պտղաբերության դիցուհին, արևի աստվածը, և ոչինչ ավելի բնական չէ, քան սա, քանզի երկինքը ամեն տարի կայանում է գետնի վրա, բայց մի հատուկ ժամանակ: Արևը ծնում է կյանք գետնի վրա՝ իր ուժը կորցնելով և իր սիրեցյալից հեռանալով: Սա է խորհուրդը մեծամոր կրոնի, և դա հասկանալու համար կարիք չկա գիտնական լինելու. այդ առումով ուսուցումը *Amanus*–ի այս ու այն կողմում որպես ավետարան կարելի է ընկալել, և միայն այն պատճառով չի կարելի հակաճառել, որ այդտեղ մեկը՝ սեմական, մյուսը՝ հնդեվրոպական, անկախ միմյանցից, երկնքում ու գետնում իրենց էության խորհրդանիշն են քաղել, բայց միմյանց այնքան մտերիմ և հոգեհարազատորեն են կապված, որի նմանը Սիրիայում և *amanus*–ից արևմուտք, Պարսկաստանից և Հայաստանից բացի, այս երեք աստվածային անհատականությունները չենք կարող գտնել արևելքում, այնպես որ

կրոնի ամենաառիրապետող կիզակետը՝ մեծամայր դիցը միայն Սիրիայում և Փոքր Ասիայում ու Հայաստանում է զտնվում. և ինչպես Սիրիայի *Hierapolis*–ում փոթորկի և արևի աստվածներին որպես մի անձ իրար մեջ են միաձուլում, նույնը պատահել է *Tarus*–ում, որտեղ արևի աստված *Herakles*–ը փոթորկի աստծու հետ միակցվել է: Պարսկական երրորդությունները՝ *Ahura-mazda*–ն, *Anahita*–ն և իր ընկեր *Mithra* արևի աստվածը, վստահաբար պարսից հիմքի վրա չեն աճել, այլ ավելի արևմուտքի երկրների ազդեցության են վերադառնում, և հայկական կրոնը մի յուրահատուկ կապակցություն է ունեցել *Hate*–ի երկրի հետ, որին մենք քիչ հետո կանդրադառնանք։ Սիրիացիներն ու հաթերը լոկ հարևաններ չէին, և ոչ միայն նրանք, այլև նրանց բնակավայրը, անգամ մասամբ նույն տեղը. Հյուսիսային Սիրիայում հաթերն ու սիրիացիներն ապրում էին միմյանց կողքին և միմյանց մեջ. և այսպիսի հանգամանքներում ես հակված եմ ընդունելու, որ հաթերի և սիրիացիների կրոնները, ինչքան էլ որ շատ հանգամանքներում չեն բացատրվում, մի փաստարկ չէ, որ մի անգամ և մի ժամանակաշրջանում միմյանց ազդելով՝ պարզացել են, այլ այս հարաբերակցությանը նպաստել են աշխարհագրական հանգամանքների երկար ժամանակի տևականությունը. ում կողմից է ավելի շատ տրված կամ ում կողմից է ավելի շատ առացվել, չի կարելի վստահ լինել: Հաթական մշակույթը գալիս է եգիպտական և ասորական արմատներից, նրա գրային համակարգը սերվում է եգիպտականից, արվեստը մեծ մասամբ ասորականից է, և սիրիական արվեստի միջոցով իրենց աստվածների ձևակերպումը իսկ ու իսկ շատ կետերում ասորականից կամ սիրիականից են փոխառված, մինչև այն աստիճան բնորոշ, որ հաթական փոթորկի աստվածը *Ivriz*–ում, ինչպես *Ramman*–ը՝ ասորիների փոթորկի աստվածը (*LYARD Monuments* աղյուսակ *65*), դեպի առաջ ու հետև եղջյուրներով է նկարագրված. այսպիսով, Սիրիան պիտի հաթական կրոնը սաղմնավորած լինի և ոչ հակառակը:

Մեր առջև բացվում է մի հսկոր դիցաբանական – պատմական պատկեր: Մենք պատմության արշալույսին տեսնում ենք փոթորկի աստծուն՝ բազմած զահին, ու նրան կից՝ մեծամորը՝ ծնողը բոլոր կենդանի արարածների: Նա անվանակոչվեց սիրիական արևի աստված: Այս երրորդությունը ավելի ուշ ընդունվեց Պարսկաստա–

նում և որպես հաղթական շարասյուն՝ մեծն դիցուհու առաջնորդությամբ, հաթերի միջոցով ընթացավ դեպի Փոքր Ասիայի խորքերը։ Մեծն դիցուհին այստեղ կանգ չառավ և մինչև հեռու արևմուտք ներթափանցեց՝ նվաճելով արևմուտքն ու Եվրոպան։ Նա անհաղթելի է տարածության և ժամանակի մեջ. և երբ հեթանոսությունը կործանվեց, նա չխորտակվեց և մինչև մեր օրերը շարունակում է ապրել Մարիենի կրոնում։

## E. Հաթերի և հայերի կրոնը

Այն, ինչ հայերի աստվածների տեղեկությունից վերջերս մեզ հասել է, GELZER-ը *(Berichten der Kgl. Sachs. Ges. D. W.* դեկտեմբեր 7-1895–ի նիստում p. 99 *ff*) ստուգել, կազմել ու խմբագրել է, մինչ հայկական աղբյուրների տվյալների փոխառումը նրա հետագա քննարկումներում բացառվել են։ Մի նախապատ–րաստական աշխատանք *Windisch-mann*–ի քննարկումներն են պարսկական *Anahita* կամ *Anaitis*-ի մասին *München*–ում *1856*–ին։

Հայկական աստվածությունններն էությամբ իրանական ծագում ունեին, և ըստ այդմ՝ իրանական անուններ են կրում։ Ամենաբարձր կետում կանգնած է աստվածահայր »մեծն ու հզոր« Aramazd–ը, »հայրը բոլոր աստվածների« (*1.c.p* 102 f.), որ պարսկական *Ahuramazda*–ն է, բայց ժողովրդի լայն զանգվածների մեջ »*մեծ տիրուհու*« կրոնն էր տիրում, որ *Anahit* »ոսկեմայրն« է, *Aramazd*–ի դուստրը, պարսկական *Anahita*–ն, իսկ կողիճ *Vahagn- Herakles*–ը՝ պարսկական *Verethragna*–ն, ըստ Gelzer-ի, միգուցե եղել է հայերի ամենաազգային և ժողովրդական աստվածը։

Սրանց կից երևում է պարսկական ծագումով երկու ուրիշ աստվածների՝ *Mihr*–ի, այսինքն՝ *Mithra* արևի աստծու կրոնը, և մյուսը՝ *Tiur,* այսինքն՝ *Tir*–ի հավատքը, որ ոչ մի նշանակություն չեն կարող ունենալ, միգուցե բացի *Spendaramet* աստվածությունից ( *Spenda Armaiti*–ի վայրը)։

Չնայած այն հանգամանքին, որ թերևս վերն անվանված աստվածների անուններն իրանական են, և դրանց բնությունը իրենց համապատասխանող իրանականի հետ համընկնում է, բայց մյուս կողմից էլ շատ հեշտ է նկատել, որ հայկական կրոնը հատուկ հարցերում ու կետերում իր ուրույն և առանձին ճանապարհով է ընթանում:

*Aramazd*–ը կոչվում էր բոլոր աստվածների հայրը. *Mihr*–ը, *Anahit*–ը և *Nane*–ն նրա զավակներն են. բայց *Ahuramazda*–ին պարսկական կրոնը որպես աստվածահայր չի ճանաչում. տաճարի սպասուհիներն ու սեռական վոհերը ստեղծեցին հայկական *Anahita*–ի կրոնի մի իրական բաղադրիչ մասը, որին անծանոթ էին պարսիկները, և դրա ակնառու դերի մասին, որ նա Հայաստանում դեռ *Strabo*–ի ժամանակից ուներ, նույնքան քիչ տեղյակ էին Պարսկաստանում *(ed. Müller, p.456, 39 ff. Gelzer, 1.c.p.118),* ուստի հակված ենք ընդունելու, որ բովանդակ հայկական կրոնը չպիտի միամտորեն դեպի Պարսկաստան հետ մղել, այլ այդ շեղումները պիտի բացատրել մասամբ որպես պարսկական աստվածների և կրոնի ազդեցություն հայկական հոգևոր մշակույթի վրա: Վերոհիշյալ երեք աստվածները կապվում են ուրիշներին հակառակ և միմյանց պատկանող երրորդություն, ինչպես դա պարզապես երևում է *Tridat – Tridates*–ի հրամանագրից *(Gelzer, 1. c. p. 144)*: Պարսկաստանում ևս գտնում ենք *Ahuramazda* – Anahita - Mithra աստվածների մի երրորդություն *(Artaxerxes Mnemon*-ի արձանագրություն–յունը, ըստ *Spiegel*–ի, *Altpersische keilschriften, p. 68 f.),* բայց խմբի երրորդը այստեղ *Mithra*–ն է. հետագայում՝ արևի աստված, որին անգամ *Avesta*–ն այդպես էլ չի ճանաչում: Նույնը վերաբերում է *Verethragna*–*Vahagn*–ին. սա էլ իր հերթին արժանի է ուշադրության և մեզ բերում է այն տեսակետին, որ Հայաստանում իրանական կրոնի ներթափանցումից առաջ գլխավոր աստվածներից երրորդն ու զուտ ազգայինը մի աստվածություն էր, որ *Verathragna*–ի էությանը զուգահեռ որպես *Mithra* գոյություն ուներ՝ այն ենթադրության համգեցնելով, որ նախահայկական վաղեմի, բայց ոչ հնդգերմանական Հայաստանի բնակիչների մեջ կրոններ են ծաղկել, որոնց միաձուլումը պարսկականի հետ ապագայում հայկական կրոնին իր պատմական յուրահատուկ երանգն է տվել: Բայց այս ենթադրությանը կարելի է հեշտությամբ

հակադրվել: Մենք գիտենք, որ նախահայկական պանթեոնի գագաթին այնուամենայնիվ մի աստվածության երրորդություն է կանգնած, բայց դա, ըստ երևույթին, կազմված էր երեք արական աստվածություններից` *Haldiš(e)*–ի տերը, փոթորկի աստված *Teisebas*–ը և արևի աստվածը (*Journal of the R. As. Society N.S. XIV*; էջ *516*, տող *15 f.* և էջ *525*, տող *13 etc.)*:

Այսպիսով, պիտի այս երրորդությունից հրաժարվել և այդ առանձնապատկերում պատճառը հնդեվրոպական հայերի կրոնի մեջ որոնել. և ահա նա ինքն է բացահայտում, որ հաթերի կրոնը, ինչքան վերը մասամբ կարողացանք փաստել, պայմաններ է առաջացնում այն որպես հայերի նախակրոնը ներկայացնելու:

Մենք *Boghazköi*–ում աստվածների շարքի գագաթին տեսնում ենք մի աստված, որ, ամենայն հավանականությամբ, *Bulgarmaden 2* և *Bor 2* և *3*-ում նշանակում է »(մեծն) *ṕ (á) - ṕ (á)* «, այսինքն` թերևս նա, »մեծն մայր«–ի ամուսինը լինելուց բացի, »(մեծն) հայր« է անվանված, և բացի »մեծն«- *m–š (Bulgarmaden 2)*, ինչպես *Aramazd*-ը` դիցահայր *mets*, և ինչպես Արամազդը` *ari (1. c. p. 102, anm. 2, Bulgarmaden 2, 9, Bor 2). ario (*=հայերեն *ari)*, այսինքն` »արի, կտրիճ« պիտի անվանվի. »(մեծն) *ṕ (á) - ṕ (á)*«–ի տիկինը կոչվում է »մեծն դիցուհի«, »մեծ մայրը *Hati* երկրի«, »թագուհին«, ինչպես *Anahit*–ը հայերի մոտ` մայրը, ոսկեմայրը, քանսի նրա քանդակը ոսկուց էր պատրաստված, և մեծն *Tikin* - »տիրուհի«, անգամ »թագուհի«: Մեծն աստվածուհուն պարզել են այդ անունը այն պատճառով միայն, որ նա իր ամուսնուն աստիճանով հավասար էր և *Anahit*–ի նման Հայաստանում կրոնի կենտրոնում էր կանգնած, և դա վավերացնում են համեմատաբար մեծ թվով նրանից պահպանված պատկերավոր հուշարձանները և նաև այն փաստը, որ *Karkemiš*-ի թագավորներն իրենց հարաբերությունները նրա հետ (որպես գլխավոր մոգ–?) հատկապես ընդգծել և կարևորել են:

*Boghazköi*–ում մեծն դիցուհուց հետո մի երտասարդ է կանգնած շան կամ հովազի վրա, և դա միակ արական աստվածն է կանանց շարքում, որ պարզապես նրա սիրեցյալն է: Նա կրում է մի մարտական աշտե և, ինչպես վերը հասկացանք, պարզապես կիլիկիա–կապադովկյան *Herakles*–ն է, ում անունը դեռ քրիստոնեական ժամանակներում լայնորեն հռչակած և մեծարված էր: Նա, ըստ երևույթին, արևի

նախնական աստվածն էր: Այս երեք աստվածությունները *Boghazköi*–ում ամենազլ–խավորն են: Հայաստանում, ինչպես վերը նշեցինք, երեք աստվածներն են *Aramazd*-ը, *Anahit*-ը և *Vahagn*-ը, ընդ որում վերջինս սիրային հարաբերության մեջ է *Anahit*–ի հետ, ինչը մի խորհուրդ կարող է իր մեջ պարունակել, քանզի Վահագնի տաճարը Տարոնի աշխարհում *Astλik*–ի սրբավայրի և մյուսը *Anahit*–ի սրբատեղիին կից էր գտնվում, այնպես որ համարձակվում եմ պնդել, որ հանձին հայկական աստվածահայր Արամազդի՝ հաթական փոթորկի աստծուն և երկնքի տիրակալին, մեծն *ṕ(á) - ṕ(á)*-ին ենք տեսնում, հայկական տիրուհի և մայր Անահիտի՝ թագուհուն և մեծամորը *Ḫātē-Hate*–ի և հայկական *Vahagn*–ի, որի ծագումը և արեգակնային բնության նմանությունը պարզորոշ նկատելի է հաթական արևի աստված *Herakles-Sanda*–ի հետ, գոնե այնպես, ինչպես ապացայում էլ կոչվել են:

Այս պայմաններում արժե ուշադրություն դարձնել այն հանգամանքին, որ AGATHIAS–ը, երբ նա պարսկական աստվածություններից էր խոսում (II, 24), *Βῆλος-Zevς*, այսինքն՝ Ահուրամազդային, օրինակ, Σανδῆς-*Ἡεραχλες* և *Ἀναιτις*-ին *φροδιτη* է անվանում. պիտի՞ նրա *Sandes-Sanda*–ն պատմական Կապադովկիայում տարածված մի հին պարսկական կրոնից կամ անգամ հայկականից սերված համարվի, և չպիտի՞ առնվազն Կապադովկիայում *Sanda*–ի պարսկական կրոնը *Vahagn*–ի միջոցով դուրս մղված լիներ: Թվում է, թե հին հաթական և նոր իրանական կրոնների համեմատությունը միմյանց հետ այնքան էլ համակողմանիորեն դրպես միատեսակ չի հաստատում, և կարծես հաթական երրորդությունների համար պարսկական աստվածությունների մեջ մի ուրիշ հավասար համապատասխանություն ևս գտնված լինի: Ըստ որոշակի հնագույն տեղեկությունների՝ *Anaitis*–ի կրոնի առթիվ հայերի մոտ Պոնտոսի երկրամասում նա ունեցել է *Zela* անունով մի սրբավայր, որը նա բաժանել է պարսկական աստվածներ *Omanos* և *Anadatos*–ի հետ (*STRABO XI, 8, 4; ed MÜLLER I, p. 439*):

*Ōmanos*-ը, ըստ WINDISCHMANN-ի *(1.s.c. p. 36)*, պարսկական *Vohu–mano*-ն է՝ անասունների և կենդանական կյանքի աստվածը, *Anadatos*–ը՝ ծառերի տիրակալ

*Amesaspenta Ameredat*–ը, որը փահլավերենում (ըստ NÖLDEKE-ի) *Amerdat* է անվանված: Այսպիսով, հաթական դիցապետը՝ ջրերի օրհնությունը, և *Vahagn*–ը, որ պրդեն հաթական Herakles–ին փոխարինած պիտի լիներ, առնվազն դրսի աստվածն էր, և *Athenogenes*–ը՝ *Vahagn*–ի իրավահաջորդը, անտառի կենդանիների պահապանը և դրսի աստվածը (տե՛ս *Gelzer 1. c. p. 108 f.)*: Այս սակավ տեղեկություններին հավելենք, որ ըստ Strabo XV, 3, 15-ի՝ *Anaitis*-ի և *Ōmanoς*-ի կրոնի սովորությունն էր նրանց պատկերները տոնական արարողութ-յունների ժամանակ շքահանդեսների թափորներովման տալը: Այս կապակցությամբ նշենք, որ *σημῆιον*–ը *Hierapolis-Bambyce*-ից, որի մասին մենք վերը BAETHGEN-ի հավելյալում, ըստ *NÖLDEKE*-ի, սխալմամբ ենթադրել էինք, որ միզուցե սիրիական դիցուհու սիրեցյալի նկարն էր, ըստ իր սովորույթի, կրոնական տոների ժամանակ մասնակցում էր ուխտագնացությանը՝ *Hiera-polis*–ից մինչև ծով: Այս սիրեցյալը, ըստ մեր ենթադրության, հաթերի մոտ հետագայի *Herakles- Sanda*–ին պիտի համապատասխանի: Ուրեմն բավական պատճառ կա ընդունելու, որ *Ōmanoς*-ը նրա սուզահեռն է, ուստի *Zela*–ի երրորդությունը ցույց է տալիս, որ հաթական *συμβωμοι* մեծն աստվածուհին փոխարինվել է պարսկականով:

Հայաստանում օտար աստվածությունների առիթով մեր առաջադրած դրույթները կարող են ավելի ամրապնդել մեր դիրքորոշումը հայկական կրոնի զարգացման վերաբերյալ: Հայկական Նանեն կամ, ավելի շուտ, Նանեան (տե՛ս GELZER *1. c. p. 124*) համապատասխանում է մի *Ναναια*–ի, որ հազիվ թե ավելին է, քան *Anahit*–ի երկնմանակը. և հայկական *Aςτλικ (այսինքն՝ փոքր աստղ)*–ը ներկայացնում է սիրիական *Kaukabhtha, այսինքն՝ Venus- Aphrodite*-ին (տե՛ս G. HOFFMANN, Համառոտություն, էջ 136 ) Հավականալի է, որ այս երկու աստվածուհիների կրոնը այսպես դյուրին ու հիմնովին մուտք գործեց Հայաստան, քանզի նրանց մոտ առկա էր նույն էությամբ դիցաբանությունը, և երկուսի դեպքում էլ հենց սկզբից յուրովի հաղթում ու պաշտում էին իրենց *Anahit*–ին: Ահա ծագումով մի ուրիշ հայկական աստվածություն Սիրիայից՝ *Barsamin, Barsimnia, Barsam-Βαρσαμην* (GELZER 1. c. p. 119 ff)-ը, ըստ *G. HOFFMANN*-ի *(Auszüge, p. 136),* իր մեջ ունի սիրիական *Bʿels(a)mi(e)n* - »երկնքի

տիրակալը«–ին *Baršam*–ը, ըստ GELZER 1. c. p. 120-ի, ասորիների աստվածապետն է, այսինքն՝ սիրիացիներինն է, և *B῾els(a)mi(e)n*-ը սիրիացիների մոտ, ինչպես *Palmyra*–ում, ամենամեծ աստվածներից է, նույնը, ինչ Հադադը, որ հաթերի աստվածապետն էր, և որի կրոնը պիտի Tigran-ի միջոցով Հայաստան ներմուծված լինի (*GELZER 1. c. p. 120 ff*): Սա կարող է հավանական չթվալ, այնուամենայնիվ այս անվանումը կասկածի տեղիք է տալիս: Նա կոչվում է *Baršamin* և ոչ *Beršamin*, ինչպես մենք պիտի ընդունենք *Βεελσαμ*–ը՝ ըստ հնագույն և պահպանված սիրիական անունների վերարտադրման (տե՛ս *PHILO*, ծնված Քրիստոսից առաջ 20 թ, MÜLLER–ի հատորում, էջ 565 *f*), բայց արդյո՞ք դրանից հետո սիրիացիները *Tigran*–ի ժամանակ *B῾el*-ին *B῾al* կամ թե *Ba῾l* էին անվանում. եթե ոչ, այդ դեպքում պիտի փոխառումը Տիգրանի ժամանակից առաջ տեղի ունեցած լինի: Բայց և այնպես առայժմ դա երկրորդական հարց է. կարելի է նաև *Barsamin*-ի *r*–ն սիրիական *l*–ի հետ համեմատել ու մեկնաբանել: *GELZER*–ը հավաստացած է, որ այս հնչյունափոխությունը մատնանշում է, որ փոխառությունը տեղի է ունեցել այն ժամանակ, երբ իրանական ազդեցությունը բարձր հասարակական խավի մեջ արդեն չափանիշ ու որոշիչ էր դարձել. Այս մոտեցումը իրականում ամենահավանականն է. սակայն եթե ընդունենք, որ ասորական *Pūlu*–ն (ենթադրաբար բաբելոնական *būlu)* = »գիր«-ը հայերեն *bur*–ի հականիշն է, և որ ասորիները *Tibara(e)*ցիներին *Tabal* էին կոչում, ուրեմն պիտի ընդունենք, որ հնարավոր է՝ *r*–ն հայերեն *Baršamin*–ում ուղղակի և առանց իրանականի միջնորդության ներթափանցած լինի և սիրիական *l*–ին է վերաբերում: Այդ դեպքում այս անունը Հայաստանում կարող է ավելի հին լինել, քան այդտեղի իրանական մշակույթը: Բայց սա ևս այս հարցում անկարևոր ու չնչին է. ավելի առարկայականը այն է, որ մենք *Baršamin*–ում, ինչպես *Nane(a)*–ում և *Astλik*–ում, մի հայ–իրանական երկնմանակ աստվածություն ունենք, ինչպես նույն *Aramazd*–ը, և կարևոր է, որ փաստել կարողանանք, որ այս համզամանքը նրա ներմուծման պատճառով է եղել *Aramazd*–ը և *Anahit*–ը համապատասխանում են *Baršamin* և »*Astλik – Kaukabhtha - Aphrodite«* զույգին. *Baršamin*–ը »երկնքի տիրակալն« է. *Baršamin*–ը *Palmyra*–ում

անկասկած բաբելոնական *El Marduk*–ի հետ միաձուլված է եղել, ինչը վկայում են նրա տիտղոսները՝ *raḫmānā* և *tajjira*–ն *(VOGHE, Inscript. Palmyr. No. 88, 92,* և *93;* երկուսն էլ նշանակում են »գթառատ«, ինչպես որ *Bel-Marduk*–ն է կոչվում*)*, որոնցից վերջինը մի բաբելոնական փոխառված բառ է: Բայց այս սիրիական երկնքի աստվածը իր էությամբ շատ չի տարբերվում սիրիական աստվածների աստված *Hadad*–ից՝ Երկնքի աստծուց, որը հավասարվում է փոթորկի աստծուն: *Palmyra*–ում նա փոթորկի աստված է, և դա ցույց է տալիս նրա հունական անունը՝ *Ζευς μεγιος χε ϱαυνιος* (*VOGUE, Inscrpt. Palm. P. 50),* և պիտի հարց բարձրացնել, թե արդյո՞ք *Balš(a)min*–ի բնույթի արտահայտությունն է եղել, նրա փոխառումն ու ընդունումը հայկական *Pantheon*–ում դրանո՞վ էր պայմանավորված եղել, թե՞ պարզապես սիրիական աստվածների աստծու զինված պայմաններն են թելադրել, կամ արդյո՞ք այն ժամանակից հետո են փոխառված եղել, երբ հաթական դիցապետի նախնական բնույթի նշանակությունը արդեն Արամայդի ազդեցության շնորհիվ անհետացել էր, կամ մի ժամանակ, երբ դեռ նրա հին էությունը բացահայտվեց, թե՞ *Baršamin*–ը իր սուկ գոյության միջոցով ազդեց Արամայդի վրա,- դա դեպի հեռուն է տանում և ուղղորդում հին հայկական փոթորկի աստծուն:

Բայց ահա մենք ունենք թերևս դրան հակասող մի վկայություն, որ արդեն *Plato*–ի ժամանակ հայերի մոտ տարածված էր սիրիական մի առասպել՝ որպես դիցաբանական պատկեր *Plato*–ն պատմում է իր *Republik X, 614 B*–ում մի հայկական *Hϱ*–ից, որ կռվում զոհվել և դեռ տասն օր հետո էլ չէր նեխվել ու ապականվել և տասներկուերորդ օրը կռհասեղանի վրա կիզվելիս վերակենդանացել էր; և հայերը պատմում են *Ara(y)* Գեղեցիկի՝ Արամի որդու մասին, որը կրում էր սիրիական հերոսի անվանադիր տիտղոսը և Շամիրամի սիրո առաջարկությունը մերժելու պատճառով նրա պատերազմում սպանվել էր (*GELZER 1. c. p. 128*): Շամիրամը, նրա անկենդան մարմինը իր պալատի սյուների վրա տեղադրելով, ասաց. »Ես աստվածներին կհրամայեմ, որ նրա վերքերը լիզեն, և նա հարություն կառնի«, բայց դա տեղի չունեցավ: Այնուամենայնիվ դա, GELZER–ի կարծիքով, առասպելի հետագա խեղաթյուրումն է և հիմք է պատճառում *Hϱ*–ին ու *Ara(y)*-ին միմյանցից բաժանելու.

բայց երբ հայկական առասպելը նրան *Aram*–ի որդին է դարձնում, ապա մենք ի զորու ենք դառնում այս ակնարկը լիարժեք օգտագործելու և Արային մի օտարական սիրիացի հայտարարելու։ Դրանից ելնելով՝ միգուցե պիտի կարծել, որ *Hϱ* հայր, ըստ Plato–ի, *փափիլինի* ծագում ունի. ըստ *Plato*–ի վկայության՝ այդ առումով առնվազն արդեն նախաքրիստոնեական չորրորդ դարում նա Հայաստանում որպես բնիկ պիտի ընդունված լիներ։ Արամազդ–ի մոտ կանգնած է սիրիական *Baršamin*–ը, *Anahit*–ի կողքին՝ սիրիական *Astλik-Kaukabhthā*–ն, իսկ սիրիականից փոխառած առասպելական կերպարներից առկա է *Ara(y)* Գեղեցիկը, որը, ինչպես վերը նշեցինք, ասորական Շամիրամի կողմից սիրվեց, բայց արհամարհելով նրա առաջարկը՝ պատերազմում սպանվեց, ապա վերակենդանացավ։ Նա ներառվում է սիրիական երրորդության մեջ՝ փոթորկի աստծու, *Atargatis*-ի և մի ուրիշ աստծու կողքին. նրանց վրա (թերևս ամեն տարի) սգում ու ողբում էին, ու նախկինում դա վերաբերում էր նաև թերևս ամբողջ տարին *Hierapolis-Bambyce*–ում այրվող խարույկին։Իսկ հաթական երրորդությունում որպես երրորդը հանդես է գալիս Herakles–ը՝ մեծն դիցուհու սիրեցյալը, որի կրոնին էր կապվում *Tarsus*–ի պոհարանը։ Մինչդեռ հայկական երրորդությունում երրորդը Aramazd–ին ու *Anahit*–ին կից վերջինիս սիրեցյալը՝ *Herakles*–*Vahagn*–ն է։

Այսպիսով, կարելի է համարձակորեն ենթադրել, որ փոխառումը ուղղակի սիրիական *Baršamin*, *Astλik-Kaukabhthā* և *Ara(y)*-ից է եկել, քանզի դրանք մի երրորդություն էին կազմում, որը հաթա–հայկականին հոդ առ հոդ համապատասխանում է և, անշուշտ, շատ պարզ պատճառով, քանզի սա նախորդի վրա է հիմնված. բայց այս երկու երրորդությունների համեմատությունը առիթ է տալիս դատելու, որ փոխառությունը երրորդությունների բոլոր երեք անդամներին ներգրավվեց. և ըստ այդմ, եթե չորրորդ նախաքրիստոնեական դարում սիրիական *Ara*–ն հայացվել էր, ապա կարելի է ենթադրել, որ նույնը կատարվել էր երրորդության մնացած մասերի հետ ևս։ Այս երրորդությունը կրկին այս փոխառման առթիվ ուղղակի վկայում է, որ դրա նմանը այն ժամանակ Հայաստանում արդեն առկա է եղել, ու այսպիսով փաստվում է, որ այդ երրորդության Արամազդ, Անահիտ անվանված աստվածները նախապարթևական են, և ըստ դրա՝ այդ բոլոր »իրանականը

Հայաստանում հատկապես պարթևական է« (ըստ GELZER 1. c. p. 118–ի՝ նախաիրանական), հետևաբար լուտ հայկական են, Այսպիսի փաստարկները սակավ արժեքավոր են, բայց միշտ կարող են քննարկվել:

Երբ ես սրանց հիման վրա փաստարկում եմ, որ հայկական գլխավոր աստվածների իրանական անունները առնչվում են նախաիրանական, այսինքն՝ հին հայկական կամ հաթական աստվածներին, ապա դա բնականաբար չի նշանակում, որ ես դրանով պնդում եմ, որ ընդհանրապես Հայաստանում իրանական աստվածներն ու աստվածանունները միշտ փոխարինել են հին հայկականին, այսինքն՝ հաթականին, բայց և այնպես կուզեի ուշադրություն հրավիրել այս հարցի հանդեպ, քանզի վերոհիշյալով զուտ պարսկական տարրերը հայկական կրոնում բավականաչափ սահմանափակված չեն: Մեզ ավանդված է նաև մի ուրիշ հայկական աստված՝ *Tiur* անունով (*GELZER, p. 109 ff*). »Նա գիտություն ու դպրություն քարոզող հոգևորական« է, որ բնակվում էր *Ormizd*–ի քարտուղարական մատենադարանի՝ ճարտարա–բանասիրության դպրոցի տաճարում. իսկ հիմա ինչպե՞ս *Tiur* անվան ինքնությունը պարսկական *Tir* անվան հետ »Տյուր, Տիր, Հերմես« մոլորակի հետ հարաբերել ու համատեղել. բայց այնուամենայնիվ երկրի պաշտոնական աստվածների համար նա *Ormazd-Aramazd*–ի դպիրն է: Սրա պարագայում շատ քիչ պարսկական լուգահեռներ գոյություն ունեն, և շատ ակնառու է, որ *Nabū–Nebō*-ն Բաբելոնի քույր քաղաք *Barsippa*–ի աստված և Բաբելոնի դիցապետ *B῾el–Marduk*–ի դպիրն ու լիազորն էր, և Բաբելոնում, ինչպես Սիրիայում, նրանց հարգում ու պաշտում էին *B῾elšamin*–ը՝ Արամազդի պատճենը *Palmyra*–ում, կարելի է ասել, բաբելոնական *Bel-Marduk*–ին մասամբ իր մեջ ներառել էր. այնտեղ՝ *Palmyra*–ում, *Nabū-Nebū*–ն նույնպես ներկա էր նույն ժամանակ, երբ *B῾elšamin*–ը՝ *Aramazd*–ի պատճենը, Հայաստան հասավ: Դա ենթադրելու առիթ է տալիս, որ հայկական Օրմազդ–Արամազդի դպիրը բաբելոնական *Nabū* կամ սիրիական *Nebō*–ին է համապատասխանում և ուղղակի և ոչ անուղղակիորեն Բաբելոնից կամ Սիրիաից Պարսկաստանի վրայով Հայաստան է եկել:

*Tiur* անունը կարող է նրան տրված լինել պարսկական կրթություն ստացած բարձր խավի կողմից, եթե, իհարկե նա Tir–ը լիներ. Այսպես՝ կարելի է *Tiur*–ին *Te* = »տեր« և *Ur* ՚ դրպես մի անձնանուն, տարրալուծել (տե՛ս *Δτ–σανδα–ν* = *Ti(dē)* + *Sanda)*: Ասորա–բաբելոնական *Nabū- Nebō*–ն դպիր է և կոչվում է դպիր, *tupš(s)arru*-ն հետագայում վերածվել է *dipsar*-ի, դրանից ելնելով՝ կարելի է փորձել այս բառը *Tiur*–դպիրի մեջ վերագտնել: Բայց եթե հայերենում այդ *p*–ն, ըստ հնչյունաբանության, *v* դառնա, թերևս *tivsr,* կամ *ps*–ը *p*–ի ձևափոխվի, միգուցե *tip*ʿ*r* էլ կարելի է ակնկալել: Ուրիշ ձևեր ևս հավանական են. նոր պարսկական *debir-* »գրող«–ը հայերենի *dpir*–ի միջոցով ավելի վաղեմի *dipir*–ին է վերադառնում. և սա էլ փահլավերենում առկա ամենահին հասանելի ու մատչելի ձևին և ոչ dipivar-ին, ինչը ընդհանրապես ընդունված է (տե՛ս *Justi, Zeitschr. d. D. Morg. Ges. 49, 683*–ում; *Hubschmann, Armeni. Gramm. I, I, 145)*: Այստեղ մի կողմից՝ *dipir*–ը հին պարսկերենի *dipi* = »արձանագիր«–ից չի կարելի բաժանել, մյուս կողմից՝ դրանից չի կարող ածանցված լինել: Այդպես էլ ես *Wiener Zeitschr. f. Kunde d. Morg. VI, 218 f.*–ում գրել եմ, որ այն շատ ճշտությամբ էլամական *Ti-pi-ra*–ին (գրվում է *dipira*) է հետ դառնում, և գտել եմ, որ դա էլամական մի ածանց է եղել ու էլամական *t(d)ip*= հին և պարսկերեն *dipi*–ն կարող է լինել. Այդ դեպքում հնարավո՞ր է, որ *Tiur*–ը աքամենդիականից և կամ ավելի հին ժամանակներում փոխառված *dipir*–ին համապատասխանի. այս ընկալումը կարող է հայերենի հնչյունային կանոններին համահունչ լինել: Քիչ սպասելի է, որ հայերի մոտ դեռ հաթական ստովածանուններ պահպանված լինեն, նույնիսկ ամենաչնչին անձնանուններ չեն երևում, նույնիսկ շատ քիչ հաթական աստվածների մականուններ են նշմարելի:

*Tir-ik, Tir-uk, Tir*-ayr (*Tir*-ի–մարդը) և *Tir-ot*ʿ*s*–ը հայկական անձնանուններ են *(Hubschmann, im Festgruss an Roth, p. 101* և *104; Armen. Gramatik I, I, 88* 9 *Justi, Iranische Namenbuch p. 327f.)*: *Tir*-ի մեջ կարելի է, ըստ հնչյունային կանոնների, միայն *Tēr* = »տեր«–ը գտնել և իրականում նա կոչվում է հենց այդպես՝ մարդ, որ, ըստ մի սովորույթի, *Tēr-ayr,* այսինքն՝ տիրոջ մարդ է կոչվում, ըստ մի հին *Tēr*-ի *(Justi, l. c. p.*

*323)*: Ես կցանկանայի այժմ այս »տեր«–ին՝ որպես հին հայկական աստվածներից մեկը, թերևս որպես մեծամոր ամուսինը համարել, քանզի միայն մեծամոր ամուսինը կարող էր »տեր« կոչվել. ինչպես հայերի մոտ տի–կին, այսինքն՝ »տեր կին«, նույնն է և *-ayr*–ը *Tir–ayr*–ի մեջ: Մեծ աստվածը հաթական արձանագրություններում կոչվում էր մեծն *ṕ(á) ṕ(á),* և պատահական չէ, որ *Tir-ik, Tir-uk* և *Tir-otʿs*-ի կողքին *Bab-ik* և *Bab-otʿs (HUBSCHMANN in dem Festgruss an ROTH, p. 104* և *100)* և *Tēr, Bab* ունենք, ուրիշ անուններ – *otʿs*-ով ընդհանրապես գոյություն չունեն: Ըստ այդմ՝ *Tēr*-ի մեջ մի աստված պիտի տեսնել, նույնպես և դա պիտի *Bab*-ի պարագային շատ մոտ լինի, ու ոչ սովորական, այլ ուղղակի աստված, որ հաթերի մոտ »տեր« պիտի կոչված լիներ, և նրան մեծն *ṕ(á) ṕ(á)*-էին անվանում:

Այն համզամանքը, որ հաթական դիցանուն *Sanda*-ն, որը հաթերի մոտ *šanda* էր արտասանվում, և հայերեն բառեր *šand, šant,* և *šantʿi*-ն *(šant*-ական*)* = »կայծակ, շանթ« համապատասխանում են միմյանց և հաթական անձնանունից են փոխառված, դրա մասին արդեն վերը խոսվել է:

Այն, որ մ.թ.ա. 1300-in ապրող թագավոր *Ht3s3r3*-ն և նրա մերձավորներն առնվազն չեն հիշեցնում նրանց՝ հաթերի հետ ազգակցության կապը և հետևաբար հայերի հետ ազգակից լինելը, մենք արդեն վերը տեսանք: Այն, որ մենք քիչ բան գիտենք նրանց կրոնից, դա անկարևոր ու անհիմաստ չէ, և դրա առթիվ ակնարկել ենք:

Խաղաղության պայմանագրում Ramses II–ի ու *Ht3s3r3*-ի միջև ամրագրվում են *Swth*-ը՝ որպես *Ht3*-ի երկնային տիրակալ, արևի աստված *I-r-n-n3*-ն՝ որպես *Ht3* երկրի մայրաքաղաքի աստված, բայց *Tarsus*–ում՝ հաթական Կիլիկիայի մայրաքաղաքում, երկնքի սատծու կողքին, որպես քաղաքային աստված, արևի աստվածն էր պաշտվում ու հարգվում, սակայն սա ևս ազգակցության վերաբերյալ ոչ մի որոշման չի կարող առաջնորդել:

## Հաթա – հայկական պատմությունը

Եթե *Šuar-data* և *(U.Y) Aš-data* անուններն այնքան հնդեվրոպական են, ինչպես որ երևում են, և եթե դրանք և *Šurasi(e)r*–ը հատկապես հին հայկական են, ապա հաթա–հայերի մեծամասնությունը արդեն մոտավորապես *1400*–ին (մ.թ.ա.) կամ ավելի վաղ բնակեցված է եղել Առաջավոր Ասիայում՝ ոչ այնքան հեռու եգիպտական տարածքից; և եթե աստվածանուն *Tarḫu*–ն չուտ հաթական, այսինքն՝ հին հայերեն կամ անգամ արդեն *1400*–ին հաթերից փոխառված լիներ, ապա հնարավոր է, որ հին հայկական թագավոր *Tarḫundura-uš(?)*–ը շուրջ *1400* –ին կամ ավելի վաղ, ենթադրաբար հյուսիսային սիրիական երկիր *Arṣ(z)au(ia)*–ում և զուգեւ Եփրատին կից *Karkamiš*–ի մարզի տիրակալը եղած լիներ։ Հնարավոր է, ինչպես վերը արծածված *EUSEBIUS*–ի տեղեկություններում, *Abraham*–ի 508–րդ տարում *Disanda-Desandus-Desanda(s)*-ը, այսինքն՝ կիլիկիական *Sanda*–ն Փյունիկիայում, շատ մեծ հարգանք էր վայելում, ինչը այնքան էլ անհավանական և վերացական գաղափար չէ, այլ իր մեջ մի մշուշոտ հիշողություն է պարունակում կիլիկիացիների բազմամյա տիրապետության առկայությունից կամ Սիրիայում նրանց ազգակիցների մասին հատուկենտ տվյալներից։ Հակառակ իմ նախկին կարծիքի՝ այժմ ավելի հակված եմ պնդելու, որ Htesere-ն (շուրջ *1300*–ին) և նրա սերունդները այնուամենայնիվ հաթերի ազգակիցներն են, և այդպիսով հենց նրանք շուրջ *1300*–ին՝ *Ramses II*–ի ժամանակ, որպես մի հին հայկական թագավորություն Հյուսիսային Սիրիայում և դրանից ավելի հյուսիսում եգիպտացիների հետ մրցակցել են, և համենայնդեպս նրանց վորքը մեծ մասամբ բաղկացած էր հաթերից։

Այդ շրջանում *Hātē*–ում իշխում էր մի ուրիշ թագավոր, ինչի մասին տեղեկանում ենք այդ ժամանակվա արձանագրություններից, սակայն երևում է՝ դրանք կերպափոխվել են. հինավուրց արձանագրություններից ակներև է դառնում, որ ժողովուրդը Սիրիայում *Hamā-Hamāth*-ից է, հենց անվանագրերում էլ երկիրը *Ḫātē* է վերնագրված, և *Hamāth*-ի թագավորները իրենց կոչում էին »թագավորն *Hātē*–ի«. *Hamāth*–ը (համաթացիների ? կողմից) թերևս այնպես է կոչվում (տե՛ս *Hamā V, 2 f.; IV, ı),* որ

նրան պիտի որպես մայրաքաղաք դիտենք։ Բնակիչներն էլ իրենց կոչում էին համաթացի, և դա այն բանի հակառակ չի խոսում, որ թագավորի իշխանությունը ամբողջ Հյուսիսային Սիրիայի վրա է տարածված եղել, այլև գոյություն է ունեցել *Hamāth*–ի մի ուրիշ թագավոր (տե՛ս *Hamā I, 3*)։ Թվում է՝ դա վերաբերում է Կիլիկիայի մի թագավորի, որը նրանից անկախ է եղել, այնուամենայնիվ *Hamā- Hamāth–I* արձանագրություններում (*Hamā, I, 3; V,3)* հարաբերությունները Կիլիկիայի հետ հիշատակված են, երբ մի թագավոր բազմաթիվ անգամներ ինքն իրեն հաթեցի է անվանում (*Hama IV, 2* և *4*; *cf, V, I*), բայց կիլիկիացիները, ինչպես վերը դրանց անդրադարձել ենք, հաթերի մի ստորաբաժանումն են եղել, և լավ պյդմ՝ *Hamāth*–ի թագավորները Կիլիկիայից պիտի սերված լինեն։

*Jerabis*–ի վերծանած հնագույն արձանագրություններում, ինչքան գիտեմ, դրա մասին շատ քիչ է հիշատակվում, իսկ ավելի ուշ շրջանի Կիլիկիայի հիշատակումներում Կիլիկիայի հատուկ անունն է շոշափվում Այստեղ անվանված է *Ḫ(H)ātē* երկրանունը միայն (*Jerabis II, 2* և այլն), բայց ոչ մի թագավոր *Ḫ(H)ātē*-ից։ Թերևս, դրան հակառակ, *Karkemiš*–ի թագավորները *Jerabis*–ում իրենց անվանում էին հաթեցի (*Jerabis I, I, 5; II, 2* և *3),* և որպես հիմնական տիտղոս՝ կրում էին »(իսոր) *Karkemiš*–ի թագավորն« (*Jerabis I, I, f; II, I; III, 3*) պատվանունները։ Այստեղից կարելի է ենթահանգման գալ, որ նրանք Կիլիկիայից չեն եկել և որևէ մեկից կախյալ չեն եղել, այլ ինքնավար ու անկախ կամ իրենց համար շահավետ ու մատչելի կերպով վասալի հարաբերության մեջ են գտնվել *Ḫ(H)ātē*-ի թագավորների կամ Կիլիկիայի հետ։ Սա կարող է պատասխանել այն հարցին, թե արդյո՞ք *Ḫt3s3r3* –ն և նրա հայրենակիցները *hatio*-հայ էին, թե ոչ, և դրան համակցել նաև այն, որ թերևս *Karkemiš*–ը և *Ḫt3s3r3* –ը դաշնակից են եղել; և դա քիչ հավանական չէ, քանզի վերոհիշյալ Arṣ(z)au(ia)-ն *Karkemiš*–ին ներառող գավառ է եղել, այնպես որ մոտածելու առիթ է ներկայանում, որ *Karkemiš*–ի հաթերը Arṣ(z)au(ia) – ում պողեն *Tarḫundara-uš*-ի ժամանակներում՝ *1400*–ի շրջակայքում, *Karkemiš*–ում էին բնակվում։ Շատ հասկանալի և բնական հետևություն է, որ Կիլիկիայի առաջին ներխուժումը Հյուսիսային Սիրիա *Ht3*-ի թագավորների հետ

*1400*–ին կամ *Ḫt3s3r3* –ի հետ շուրջ *1300*–ին պիտի կապել. միայն մի բան է հակասում այս երկրորդ ենթադրությանը. *Ḫt3s3r3* –ի մայրաքաղաքը, ըստ երևույթին, դեպի *ʾI-r-n-n3,* և ոչ *Tarsus*-ն է մատնանշում:

Բայց անշուշտ *Tarsus*–ը պարզապես արդեն *Salamanassar* II-ի ժամանակ (*860-825*) Կիլիկիայի մայրաքաղաքն է եղել (*Obelisk, 138*), բայց դա չի նշանակում, որ հետո՝ դեռ *1300*–ին, նույնպես եղած լինի:

Դրան հաջորդող ժամանակում՝ մոտավորապես *900*-ական թթ. Քրիստոսից առաջ, արձանագրությունները մեկ հաճախակի տեղեկացնում են, որ *Karkemiš*-ում Կիլիկիայի հետ հարաբերություններ չեն արտահայտվում (*Maraš*–ի *Löweninschr. I, 2, 5; Maraš II, I; Maraš III, I; Ordasu*-ի Առյուծի արձանագրություններ, տող *I; Izgin,* սյունակ *III, 19; IV, 2),* քանի որ այդ ժամանակվա պատմությունը այլևս գոյություն չունի, և *Tarsus*–ի և Եփրատի միջի տարածքը, այսինքն՝ *Hate*–ն, առանձին թագավորությունների էր կազմալուծվել, ու մի երկիր այդ տարածքներում որպես *Hate*-ի թագավորություն չի հիշատակվել, որ կարելի լինի մի *Hate*–ի թագավորի ենթադրել: Գոյություն ունի միայն մի թագավոր *Kar-kemiš*–ից և մյուսը՝ *Gurgum-Markaš*–ից: Այդ ժամանակներից հետո (712-708–ի միջև) առաջին հաթական իշխանությունը այդ տարածքին է պատկանում, և ինչպես ես վստահությամբ միշտ փաստել կցանկանայի, այն է, որ *Kommagene*–ում Mutul–ի արձանագրությունը՝ *Ordasu*–ում *Malatia*–ի մոտ, անսպասելիորեն վավերացնում է այն, ինչ *Sargon*–ի Տարեգրությունից (*194 ff.; 388ff.*), ըստ *Paris*–ում գտնվող պատճենի, պիտի եզրակացնել, որ *Kommagene*–ի *Mutalu*–ն *Sargon*–ի շրջանում ժամանակավոր *Melitene*–ի տիրակալն էր. *Sargon*–ը նվաճեց երկիրը մինչև *Tarsus*՝ միացնելով *Melitene*–ն և Կիլիկիան և դրանով միաժամանակ վերջ դրեց կիլիկիա–հաթական իշխանությանը *Tarsus*–ի արևելքում:

Մյուս կողմում՝ *Tarsus*–ից դեպի արևմուտք ընկած տարածքում, նախքան այդ ժամանակաշրջանը ոչ մի կոթող չի գտնվում, որ կարողանա մեկ մասնավորապես Կիլիկիայի և հաթերի առթիվ վստահելի տեղեկություններ հաղորդել, սակայն պահպանվել են մի շարք կոթողներ, որ այնուհանդերձ նրանց հետ

լեզվացեղակցություն են ունեցել։ Քրիստոսից առաջ շուրջ *850-800* թթ. իրենց հավերժացրել է մի թագավոր՝ *Yasilikaya, Boghazkoi*–ի մոտակայքում (տե՛ս վերը, No. δ), նրանից հետո կամ նրանից առաջ եղել են շատ ուրիշները, որոնցից մեկը այնտեղ մի շարք աստվածների հոյակապ շարք է փորագրել տալիս։ Մի արձանագրություն կա Փրյուգիայից, որ ավելի ուշ հիշատակում է *Hate* կամ հաթեցի անվանումները կամ երկուսը միասին (տե՛ս No. 5), պահպանվել է նույնպես մի ուրիշը Լիկոնիայից, որը հիշատակում է մի թագավորի՝ Կիլիկիայից, և մի ուրիշի՝ հավանաբար ուղղակի իրեն, Լիկոնիայից, և գրում է, որ ինքը մի »հաթեցի, պավակն հաթեցու«ց է ծագել (No. ε), բայց դա կասկածելի է մնալու իր տառատեսակի պատճառով։ Ինչպես ցույց է տալիս *Ivriz*-ի 2 վերին ծանոթագրությունների գրային տեսակը, դրանք տարբեր ժամանակների են պատկանում, և նկատելի է, որ Կիլիկիայի թագավորները մյուս կողմում, այսինքն՝ *Tarsus*–ի արևմուտքում ևս իշխելիս են եղել և Հաթի ու հաթեցիների տապալումից առաջվա կամ ավելի ուշ ժամանակների են պատկանել։

Բայց *Karabel*–ի լեռնանցքի մոտակայքի *Ninfi*–ի արձանագրության մեջ թագավորը կրում էր մի սրածայր գլխարկ, որը նմանում էր Ḫtзsзrз-ի (շուրջ 1300, *Lepsius*, Կոթողներ, աղյուսակ 196; տե՛ս *W.M. Muller, Asien und Europa*, p. 329) և ոչ թե Ramses III–ի (շուրջ 1200–ի) զերեվարած հաթեցի իշխանի կրած գլխարկին (տե՛ս *Lepsius, 1. c.,* աղյուսակ 209 և *W.M. Müller, 1. c., p.323*)՝ նման *Boghazköi*–ի թագավորներին, որոնք այլևս գլխարկ չէին կրում, և այդտեղի *i* ծանոթագրությունները ունեին մի տեսակ հնագույն ձև. ենթադրաբար արդեն շուրջ *900*–ին, եթե *Ramses III*–ի ժամանակվա իշխանը *Htз*–ից էր, և նրանց տարազը արևելքում և արևմուտքում միանման էր, ապա *1200*–ից առաջ հաթերի հետ առնչություն ունեցող մի թագավոր Սմիրնայի (Իզմիր) մոտակայքում իր գորությունն էր ցուցաբերած եղել։

Երբ ասորիներն իրենց անկումին մոտեցան և այնուհետև պարտվեցին մարերին և բաբելոնացիներին, մի անգամ ևս հաթական գորությունը վեր բարձրացավ ու նշմարելի դարձավ, և նորից Կիլիկիայից հայտնվեց մի թագավոր, որ *Hate*–ն հպատակեցրեց։

*Sy(u)ennesi(s)*–ի նոր արձանագրություններում *Mutal-u*–ն *Bor*–ից անվան-վում էր թագավոր, աչքի ընկնող միակ թագավորը *Tarsus*–ի և թագավորը Կիլիկիայի: Համենայնդեպս պեղումների վայրը՝ *Tarsus*–ից արևմուտք, վկայում է այն մասին, որ իր ժամանակին ևս Կիլիկիայի թագավորների կողությունը *Tarsus*–ի վրայով դեպի հյուսիս–արևմուտք էր սփռվում, ուստի այն թագավորների հրամանով նույն տեղում թագավորի պատկերը պատրաստել են տվել, և դա կատարվել է ավելի ուշ ժամանակներում. ըստ Bulgarmaden–ի ավելի նոր արձանագրության՝ *Tarsus*–ի արևմուտքում: *Sy(u)ennesi(s)*–ն է դրա հեղինակներից մեկը՝ իշխան ոչ միայն Կիլիկիայի արևմուտքում, այլև վստահաբար ևս Melitene-ի հյուսիսում և *Karkemis*–ի տարածքում՝ արևելքում, և, հավանաբար, Menua–ն՝ Հյուսիսային Սիրիայում, ով իրեն կոչում էր տիրակալը *Hātē*-ի, տիրակալը հաթերի:

Մոտավորապես այդ ժամանակներում և միգուցե դրանից վաղ Ազրակում, Կեսարիայի և *Tarsus*–ի միջև »մի կիլիկիացի, կամ մի կիլիկիացու«–ի համար տեղադրել են մի զերեզմանաքար հաթերեն գրությամբ: Կիլիկիացիների պետության այն ժամանակվա մոտավոր տարածումը ավելի ուշ ժամանակների հույների եզրակացրած տվյալների հետ մի կապակցություն պիտի ունենա, ու դեռ շատ էլ վստահելի չէ, որ *Bulgarmaden*–ի արձանագրությունների թագավորը իրեն Լիկոնիայի տիրակալն էր անվանում, բայց վստահ երևում է, որ շատ ավելի ուշ *Kolitolu*–ի արձանագրություններում, հին Լիկոնիայում հիշատակվել է »մի թագավոր Կիլիկիայից«. բայց ճիշտ կլինի վստահ լինել, որ Կիլիկիայի բարձրությունն ու գերակշռությունը ավելի ուշ ժամանակներում էլ, այսինքն՝ մոտավորապես *550* թ. Քրիստոսից առաջ հին *Likonia*–ի վրա տարածված էր: Այժմ մենք հասկանում ենք, թե ինչու *Sy(u)ennesi(s)*–ը՝ Կիլիկիայի թագավորը, Բաբելոնի տիրակալի հետ միջամտում էր մարերի թագավոր *Kyaxares*–ի և Լիդիայի թագավոր *Aleattes*–ի միջև հաշտության համար (*Herodot I, 74*), քանզի նրանք շահագրգռված էին Փոքր Ասիայում գերիշխանության հարցում, և միգուցե հիմա կարելի է հին պատմության մի ուրիշ ծանրակշիռ իրադարձություն մի նոր պարզաբանությամբ ներկայացնել *Karkemis*–ի մոտ Եգիպտոսի թագավոր *Necho*–ի և Բաբելոնի *Nebukadnezar*–ի մեջ պատերազմ է

ծագում (*605-* ին Ք.ա.). *Karkemis*–ը այն ժամանակ Կիլիկիայի թագավորների տիրապետության տակ էր (և դա շատ հնարավոր էր), այնպես որ այն հանգամանքը, որ պատերազմը *Karkemis*–ի մոտ է տեղի ունեցել, կարելի է այսպես բնութագրել. Կիլիկիայի թագավորը՝ բնականաբար Բաբելոնի թագավորի բարեկամը, տիրակալն է Հյուսիսային Կիլիկիայի՝ *Karkemiš* մայրաքաղաքով. *Nebukadnazar*–ը զնում է *Sy(u)ennesi(s)*–ին օգնության, և նրանք համատեղ հաղթում են Եգիպտոսի թագավորին (այս հարցի կապակցությամբ տե՛ս *Chronik II, 35, 20*. *Necho*-ն՝ Եգիպտոսի թագավորը, շարժվեց կռվի *Karkemiš*-ի դիմաց՝ Եփրատին կից)։ Սա ավելին է ասում, քան նրանից սպասում էինք, և դա այն է, որ *Karkemiš*-ը, լինելով Կիլիկիայի կենտրոնը և գլխավոր ամրոցն ու պատնեշը Հյուսիսային Սիրիայում, *Necho*–ի թիրախն ու նպատակն է եղել։

Թե ինչքան տևեց Կիլիկիայի նոր պետության ընդարձակումը, չգիտենք, միայն տեղյակ ենք, որ, ըստ *Bulgarmaden*–ի Ափսեի արձանագրության՝ մի թագավոր Կիլիկիայից, ում մեծ հայրը նույն անունն էր կրում, ինչպես նախկին արձանագրութ–յունում, ենթադրաբար նույնպես և իր թոռը, որ այդ շրջանում իշխում էր, ամենայն հավանականությամբ արձանագրության երկրորդ մասի վերնագրում իրեն և ոչ թե իր մեծ հորն է համարում Ափսեի արձանագրության հեղինակ թագավորը։

Հին Կիլիկիայի պետության ծավալումներից տեսանելի է, որ *Solinus*–ի մոտ մի անակնկալ դիտողություն է պահված երևում, որը *Գլուխ 38, I. f.*-ում (այդ կապակցությամբ տե՛ս *LEHMAN*-ի *Wocheninschrift fur Klass. Philol.*, *1893 No 22* և նրանից առաջ՝ ***A.D. Mordtman, GROTE***-ի *Münzstudien III, 121 ff*) տեղեկացնում է, որ Կիլիկիան մի ժամանակ ծավալված է եղել հարավում՝ մինչև Pelisium, արևելքում՝ մինչև մարերը և արևմուտքում՝ մինչև Լիդիան։ Կարևորն այն է, որ ըստ ավելի ուշ տվյալների՝ ապազայի Կիլիկիայի սատրապության չափերը հասել էին անցյալի կիլիկիական պետության ծավալներին, ինչը արձանագրությունների տվյալներին լավագույն կերպով համապատասխանում է և թերահավատներին հավաստում իմ վերծանութ–յունների ճշմարտացիութ-յունը։ *Prof. NIESE*-ն, որին դժվար է գիտական վարկածներ հորինելու մեջ մեղադրել, ինձ հետ այս կետում բաղյացակամորեն համաձայն է հետևյալ կերպով.

Կիլիկիայի պարսկական սատրապության սահմանները, ըստ *HERODOT V, 52* և *I. 72*–ի տեղեկատվության, տարածվում են Հայաստանի և Կապադովկիայի միջև, *Halys*-ի վերին ընթացքը հոսում է Կիլիկիայի միջով դեպի *Katanoa*–ի երկրամասը (դա նշանակում է՝ *Hātē*–ն), և Melitene–ն Կիլիկիային էր պատկանում. սրան համապատասխանում է մի տեղեկություն *Strabo XII,533 f*-ից, որտեղ Կատաոնան և Կապադովկիան տարբեր երկրներ են ներկայացնում, և *Ariarthes III*-ը (իշխում էր *255-220թթ.*Ք.ա.)՝ Կապադովկիայի կոմսը, անմիջապես զահը բարձրանալուն և տիտղոսը ստանալուն պես Կատաոնան և Կապադովկիան միմյանց միացրեց: Համաձայն դրան՝ 286/285 թթ. Ք.ա., ըստ բոլոր տվյալների, Կատաոնան Կապադովկիա չէր համարվում, այլ պատկանում էր Կիլիկիային (տե՛ս *Plutarch Demetr. 48),* իսկ ավելի ուշ *Mazaka*-ն (այսինքն՝ Կեսարիան) կոչվում էր Կիլիկիա (*Strabo XII, 534, 538),* ըստ որի՝ կարելի է ենթադրել, որ այս հողակտորը մի ժամանակ Կիլիկիային էր պատկանում: Թե ինչքան էր ծավալվում Կիլիկիան Տավրոսից դեպի հյուսիս և արևմուտք, մեկ անհայտ է մնում. ո՛չ *Herodot I, 28*–ը և ո՛չ էլ *Xenophon anab. I, 2, 19 f*-ը այդ մասին ոչինչ չեն հաղորդում:

Լիկոնիան, ըստ Քսենոփոնի պատմության, համենայնդեպս չէր պատկանում *Sardes*–ի սատրապությանը, և սատրապությունների ցանկում *Anabasis*–ի վերջում Կապադովկիայի հետ էր միացել: Ալեքսանդրի օրոք, որը սատրապությունների սահմանները քիչ էր փոփոխում, պիտի *Isaura*–ն և *laranda*–ն Տավրոսի հյուսիսային կողմում Կիլիկիայի սատրապությանը պատկանած լինեն, քանի որ այն ժամանակ կռվի մեջ հաղթանակած *Balakros*–ը իր հպատակության ներքո Կիլիկիան էր կառավարում (*Diador XVIII, 22 Arian anab. II, 12, 2*): Perdikas–ը այս երկու քաղաքները նվաճելուց հետո ձմեռը այդտեղի շրջակայքում անցկացրեց (*322/1*–ին), և այդ բերումով Կիլիկիան է նկարագրված (*Plutarch Eum. 4.* համեմատի՛ր իմ գրքի հետ՝ Հունական և մակեդոնական պետություններ *I, 213, 218)*:

Նկատենք, որ պարսկական Կիլիկիայի սատրապությունը դեռ Տավրոսի վրայից դեպի դուրս էր տարածվում, և առավել ևս կարելի է ընդունել, որ պարսկական տիրապետությունից առաջ Կիլիկիան նույն ծավալն էր ընդգրկում:

Վերը օգտագործված հաթերեն գրերով տվյալները և վերջին բուն աղբյուրները վերաբերում են հաթերի քաղաքական պատմությանը և հատկապես Կիլիկիային, և առնվազն Արևմտյան Կիլիկիայում հունա–հռոմեական ժամանակվա Փոքր Ասիայի կուռ հաթական (ինչպես *αρι–ς* վերջացող = հաթա–հայկական *aro*-ն. ոչ հաթական *i*-ն է վերջավորությունը ցույց տալիս. տե՛ս *Zeitschr. f. Assyr. VII, 99 ff,* և *102* և վերոհիշյալ տվյալները) արձանագրություններից երևում է, որ այնտեղ մի հաթական բնակչություն, որը երբեք գերակշռություն չի ունեցել, »ոչ հաթերի« կողմից ներառված է եղել, բայց թե ինչքան են կիլիկիացիները հետպատմանագրության ժամանակից՝ մոտավորապես 550–ից սկսած, նրանց հետ շփվել, հաթեցի էին, թե ոչ, հնարավոր չի եղել պարզել: Հնդեվրոպական հայերի՝ *Hayk*՝–ի պատմությունը կապմավորում է հաթերի պատմության շարունակությունը իրենց հին հայրենիքի արևելքում և հյուսիս-արևելքում. դա մեկ չի վերաբերում, թերևս կարելի է հարցնել, թե կարելի է արդյոք մի հիմք ու հենակետ գտնել կարողանալ՝ պարզելու համար, թե երբ էին Հաթի հայերն առնվազն դեռ *Assurbanupalu-Sardanapal*–ի (*668-626*) ոչ հնդեվրոպական տիրակալների տիրապետության ներքո ասպատակ և ոտնատակ դարձել:

Շատ տարիներ առաջ ես մի ենթադրություն էի բարձրաձայնել, որ քիմերների անկումը Փոքր Ասիայում *Assarhadon* (*681*–668) և *Sardanapal* (*668-626*)-ի թագավորության հետ համընկնում է, ինչպես նաև խոշիների և թիբարացիների արշավանքը *Hate*–ի երկրից, որտեղ նրանք դեռևս առնվազն ասորական ժամանակներից բնակվում էին Սև ծովին հարակից հարավարևելյան ու արևելյան տարածքում, բայց դա մի ենթադրությունից ավելին չէ:

Ըստ հին տեղեկությունների՝ հայերը պիտի փռյուգիացիներց սերված լինեին, և նրանց լեզուն փռյուգերենի հետ բապում ընդհանրություններով լի է (*Herodot VII, 73; Eudoxus, Stephanus.* Բուզանդացի *᾿Αρμενεα*–ի ներքո), և *Kretschmer*-ը *(Griech. Sprache p.208),* առաջին տեղեկությունը ծանրակշիռ է համարել ու արժեքավորել:

Փռյուգերենի և հայերենի ակնառու նմանությունները, ինչպես որ բոլոր հին հնդեվրոպական լեզուներում նկատելի է, կարող են բավարար գտնվել այդպիսի լեզվական ընդհանրություն արտահայտելու համար: Բայց և այնպես ես կարող եմ

ասել նրանց, ովքեր կարծում են, որ ես մերժում եմ HERODOT-ի և EUDOXUS–ի դրույթները, որ այս երկուսը իմ նվաճած արդյունքներին չեն հակասում Փրյուգիացի մի թագավորի արձանագրության մեջ նա ինքն իրեն կոչում է հաթեցի, իսկ եթե ոչ, հիշատակում է իր հարաբերությունը, ինչպես հավանաբար *likoni*–ին, ինչպես և *Hate katano*–ին: Համենայն դեպս հաթական թագավորների հզորությունը բազմաթիվ անգամներ, ինչպես մինչև Լիկոնիայի արևմուտքում, նույնպես և Փրյուգիայում հասել և ներթափանցել է: Ավելին չգիտենք, բայց իհարկե միանգամայն հնարավոր է, որ ավելի մեծ ծավալներով հաթի ժողովուրդը Փրյուգիային կապված լիներ, և միգուցե քիմերների հարձակումից հետո սրանք դեպի արևելք և դրանից հետո Փոքր Հայք բռնագաղթված լինեն, միգուցե… Բայց ես կարծում եմ, որ քանի դեռ փրյուգիացիների առթիվ ավելին չգիտենք, և այս օրերին ոչ մի առիթ բաց չենք թողնում հայերի՝ Փրյուգիայի բնօրրանի տեսությունը եղածից ավելի զնահատելու, նմանվում ենք այն մոռացրիվ գիտունին, որ իր եզրահանգումները մատից է ծծում, բայց, ինչպես ասում են, ժամանակն ամեն ինչ իր տեղը կդնի:

Հնարավոր է անգամ, որ *KRETSCHMER- l. c. p. 209 f*–ում ևս իրավացիորեն *Baumgartner*–ի հակառակ (PAULY-WISSOWA'S *Realencyclopedie, Armenia*-ի ներքո) արտացոլված է *Strabo*–ի տեսությունը (էջ 432 և *454 Müler'schen Ausgabe*), որտեղ նա միգուցե իրավացիորեն նկատել է, որ ʼΑρμενιον–ի, Թեսալոնիայի, *Boibe*–ական ծովի և հայերի մեջ ինչ-որ կապակցություն գոյություն ուներ, դեռ ավելին. նա հնարավոր է համարում, որ այս քաղաքի անունը *ʼΑρμενιον – ʼΟρμενιον – ʼΟρμινιον* է, որը *ʼΟρμινιον– ορος* -ից արևելք *Bithynia* (*PTOLEMAEUS V, I, 10*) *ʼ Αρμενη* նավահանգիստն է *Sinope*–ում (նույնը *STRABO p. 467 Muller-I* հատվածը; հնագույն *Xenophon*, *Anabasis VI, I,15: ʼΑρμηνη),* և դա *ʼΟρμινιον– ορος*-ն է Փոքր Ասիայում՝ Հալես գետի ակունքներում, որ Հայաստանի ուղղությամբ դեպի արևելք են նկարագրում., ինչը հնարավոր չէ, և վստահությամբ կարելի է ասել, որ հայերն իրենց *Hayk*՛ են կոչում, և նրանց ապացուցելի նախնիները բնակվել են Փոքր Ասիայում և Հյուսիսային Սիրիայում՝ *Hatio* երկրում՝ ըստ *Ḫātē* Կատաոնիա երկրի:

Երբ ոչ միայն թագավորները, այլև հասարակ անձինք (օ.հ. *Agrak*-ի արձանագրությունը) բազմաթիվ գրություններում իրենց հաթական կամ հատկապես կիլիկիական ազգությունն են շեշտում, դա փաստում է, որ պետք չէ այն համոզմունքից խուսափել, որ դրա մեջ ազգային հակադրություն (կամ տարբերություն) է արտահայտվում, այսինքն՝ բացառվում են մի ուրիշ ժողովրդի կամ մի ուրիշ Փոքր Ասիայի ու Հյուսիսային Սիրիայի ազգությունները: Առանց պատճառի չէր, որ Դարեհը իրեն կոչում էր *(Nakš-i-Rustam* - ի, տող *13f.)* »պարսիկ՝ պարսկի մի պարսիկի, արիացի՝ արիական պարմից«։ Դրա մեջ զգուշություն ունի մի հակասություն նրա և նվաճված ոչ արիացի *Susa*–ի էլամցիների՝ պարսկական կայսրության սկզբնակետի կորիզի միջև. ուղղակի դա նման է մեր արձանագրությունների »հաթեցի՝ պավակն մի հաթեցու« արտահայտությանը: Սրանք մատնանշում են մեկ այն տիրապետող կարծիքը, որ հաթերը իրենց պաշտպանել են շրջապատի օտար տարրերից, և պավթիչ ու անկոչ հյուրերին հետ մղելու պայքար է եղել։ Այս ցեղերին կարիք չկա խոշորացույցով փնտրել: Հաթական թագավորների և Արևմտյան Կիլիկիայի՝ մեզ հասած արձանագրություններում մեծ չափով ոչ հաթա–հայկական ծագումով անուններ կան: Այս ոչ հաթական լեզվական մնացորդները ցույց են տալիս այն, ինչ նկատված է և վերջերս *KRETSCHMER*–ը (Griech. Sprache մասնավորապես էջ 311 ff., նույնպես և էջ 357 ff) մանրամասնորեն ամրագրել է լիկիական ու *kaarr*-ական անուններին մի պարզորոշ ու հստակ կապակցությամբ. պարզապես հավանական է, որ լիկիաոնացիների ու լիկիացիների անունները միմյանց համընկնում են, բայց լիկիացիները, հակառակ հնդեվրոպական Kataon–ի բնակչության, ո՛չ հաթական ծագում ունեին և ո՛չ էլ նրանց լեզուն հաթական լեզվաճյուղին էր պատկանում: Լիկիաոնիան սահմանակից էր արևելքում *Hate*– Կատաոնիային, և դրանից կարելի է ենթադրել, որ այս ոչ հաթական Լիկաոնիայի ցեղախումբը և ենթադրաբար դրա հետ միասին լիկաոնիացիներին ազգակից ուրիշ ժողովուրդները, որոնց անունները ավելի ուշ ժամանակվա Արևմտյան Կիլիկիայում կարելի է մատնանշել, այն ժողովուրդներն են, որոնց գրությունները հատապատապես կիլիկիա–հաթականի հակառակ ծագման են

ուղղորդում: Ո՞վ է մինչև հիմա ենթադրելու համարձակություն ունեցել՝ նույն հետաքրքիր վերջավորությամբ երկու իրար սահմանակից երկրամասերի՝ Լիկաոնիա և Կատաոնիա, և նրանցում բնակված երկու մեծ ժողովուրդների միջև հետագայում հայտնաբերելու ազգային հակասություն:

Շատ հավանական կերպով հաթերի այս մրցակիցները արձանագրություն- ներում պարզորեն իրենցով անվանված երկրին թերևս ամեն անգամ Հաթե–ի ժողովրդին կամ նրանց երկրին հակառակ են դասել, երբ մի վստահ նշան *l-k* կամ *r-k* պիտի արտասանվեր: *Maraš*–ի Առյուծի արձանագրությունների չորրորդ տողում գրված է. »Մի հաթեցի մեծն, թագավոր, պավակն մի մեծ հաթեցու«, հավանաբար »X–ի մեծն (հկոր), Լուկ(աոն)իայի տիրակալ«, և առավել ստույգ կարդում ենք *Bulgaraden*–ի տող 2-ում. »Լուկ(աոն)ի և և *Ḫ(H)ātē(i)(?)-(-t)* թագավորը« *(dsari(o)(-i(?)-ուղղականի նշանը);* ավելի հեռվում՝ *Kölitolu*–ի արձանագրություններում՝ »թագավորն Կիլիկիա–յի«–ի նույնպես և »թագավորն Լիկ(աոն)իայի«, թերևս անմիջապես »մի հաթեցի մեծն, մի մեծն հաթեցու պավակ«, վերջապես *Beikoi*–ի արձանագրություններում կարդում ենք *Ḫ(H)ātē-Hāti* կամ *Hatio*՝ անմիջապես Լիկ(ա–ոն)իայից առաջ և համարյա անմիջապես դրանից հետո՝ *Hatio*–հաթեցի: Այն, որ այս բոլոր հինգ կետերը իրականում այս կասկածելի Լիկաոնիան կամ լիկաոնացին կամ նման մի բան մի նեղ կապակցությամբ *Ḫātē-Hātē*-ին կամ հաթական ազգաբնակչությանն առնչվում են, այնուամենայնիվ դժվար թե մեծ կշիռ կարող է ունենալ: Անորոշ է մնում, համենայնդեպս, թե ինչպիսի հարաբերություն պիտի ունենար *Marʿaš* – ի թագավորը Տավրոսի արևելքում գտնվող Լիկաոնիայի կամ լիկաոնիացիների հետ. հավանական է՝ նրանք իրենց անվանում էին Տավրոսի արևելքում գտնվող հաթերի ազգակիցները, այնպես որ մենք չենք կարող դա լրիվ ժխտել, ինչպես նրանց ś-ն, որը ներկայացնում է ś–n(–)= *azin-* = հայերեն ազն = »ազգ«, ուղղակի ՚*-t-*՚- ի կապակցությամբ = *Hatio* (? Jerabis III, 5) և *l-k(?)-a-m=* *»լիկաոնացի«* (Bulgarmaden 2. *տե՛ս վերը*):

Նախ և առաջ նշենք, որ չենք կարող իմանալ, թե հաթերը Փոքր Ասիայի արևմուտքից եկան, թե հյուսիս–արևելքից հայտնվեցին, քանի որ մի նեղ

կապակցություն նրանց և փյուղիացիների մեջ միայն ենթադրվում է, բայց երբեք չի փաստվել, սակայն հավանական է՝ նրանք *Hate*–ում բնակվեցին և հետո Կիլիկիայում հաստատվեցին, իսկ մյուս ցեղերին արդեն այնտեղ հանդիպեցին։ Ըստ այդմ՝ բացատրելի չէ, թե ինչպես սրանք մի տարածքում, ուր հաթա–հայկական արձանագրություններն այսքան ակնառու և ցայտուն զերակշռում էին, կարող էին ավելի առաջ հաստատված լինել։ Բայց միգուցե հպատակված ժողովուրդը, դրանով հանդերձ, այնպիսի մի ազդեցության հասավ, ինչպես մասամբ ակնառու ձևով "ոչ հաթական" անունները Հաթի թագավորների և անգամ Հաթի դիցանուններում։ Դա պատահեց այս տարածքում, ինչպես տեղի ունեցավ Բաբելոնի քասային տիրապետության ներքո, երբ մի անմշակույթ, անկազմակերպ ու նախամարդակերպ ցեղ համեմայնդեպս ավելի բարձր քաղաքակրթություն և մշակույթ հաղթահարեց՝ առանց դրա յուրահատկության ազդեցությունից խուսափել կարողանալու, ինչպես ցույց է տալիս Կիլիկիայի "ոչ հաթական" բնակիչների ազդեցությունը տիրակալ հաթերի, նրանց "ոչ հաթական" անձնանունների ու ենթադրաբար նաև նրանց "ոչ հաթական" դիցանունների վրա։ Նույնը վերաբերում է նաև աճող բաբելոնական ազդեցությանը տիրապետող քասացիների բաբելական անունների և դիցանուններնի վրա, երբ ութից վեց քասական թագավորները բաբելոնական անուններ էին կրում։

Անկասկած, կարիք չկա ցույց տալու, որ մեր արձանագրությունների հեղինակ ազգը լուկիացիներից և նրանց ազգակիցներից արմատական տարբերություն ունի, և ըստ այդմ՝ ազգախառնությունը կամ լեզվախառնությունը սոսկ տեսական չէ, այլ մի իրողություն է. բայց դա տալիս է մեկ ավելի քան բավարար պատասխան. Նրանք, որ միայն հավատացած են իրենց հորինածին և ամուր կառչած են հաթերի թագավորների »ոչ հնդեվրոպական« անուններին և պայքարում են նրանց հնդեվրոպականության դեմ, շեշտում եմ ևս մի անգամ, որ մի անուն, մեն–միակ մի անուն, որը չի կարող մյուսին բացառել, միայնակ չի կարող անմեկնաբան վկայություն տալ, որ *Šamʾal-J-ʾ-d-j*-ի թագավորները Հյուսիսային Սիրիայում, *Amanus*–ից դեպի

արևելք, խոսում էին արամեերեն և մասամբ արամեական անուններ ունեին: Բայց նրանցից երկուսը մեկ ծանոթ են *Panamū* անունով, որը ընդհանուր առմամբ սեմական չէ, այլ քանվի = է *Παναμυης*-ին *(տե՛ս BALL in d. Proceedings of the Soc. Of Bibl. Arch. 1888 p. 432* և *Kretschmer, Griech. Sprache p. 357* և *397),* ուստի մի լեզվաձյուղի է պատկանում, որ "ոչ հաթական՝ կիլիկիկիացիներինը կարելի է համարել:

Հաթերը Փոքր Ասիայում և Հյուսիսային Սիրիայում լուկիացիների հետ ազգակցության կապ ունեցող մի ցեղախմբի հանդիպեցին, որոնց թագավորի անունը՝ *Tarḫu-nazi* և *Tarḫu-lara* (*Sargon*–ի ժամանակ), հաթա–հայկական չի թվում, քանվի ավելի ուշ, հայերենի հնչյունային կանոններին ներդաշնակվելով, *δβι–ης* դարձավ (*Tarhundapi K, 1359, Obv. Col. II, 39 Ρω–ν–δβι–ης*–ի դիմաց, *Zeitschr. f Assyr. VII, p. 86)* և ընդունելով, որ *dapi*–ն *dpi*–ին է ներկայացնում, այդ բառը վստահելի ու վերջնական չի համարում, քանի որ *dpi*–ն հին հայերեն չի կարող եղած լինել, հետևաբար եթե *dapi*–ն ոչ հաթական է, ապա *Tarḫundapi*-ն ևս  հաթական չէ:

Այսպիսով, այն համոզմունքին ենք հանգում, որ այդ անձնանուններում "ոչ հաթական" դիցանվան ազգաբնակչությունը դիցանուն –*Tarḫu*–ի համար (տե՛ս վերը) առաջնակարգը կարող է լինել և, վերջին շարքերում երբեք չդասվելով, պիտի ընդունվի: Սա շատ կարևոր է Փոքր Ասիայի բնակչության ազգաբանության հարցում:

Ես *Zeitschrift d, D. Morg. Ges. 48, 434 ff*- ում ձգտել եմ դրա համար ապացույցներ ներկայացնել, որ *1400* թ. մ.թ.ա. մեզ հասած մի եգիպտական թագավորի նամակները մի ուրիշ թագավորի և հավանաբար մի *Ars(z)au-(ia*)–ի (որ միգուցե *Karkami(s)*-ի մարզում էր գտնվում) կամ Միտանի–ի լեզվով էր: Սա մի պետություն էր Հյուսիսային Սիրիայում և դրա արևելքում, որի սահմանները դեպի Եգիպտոս ու թերևս Լեռնային Լիբանան և ավելի հեռու՝ դեպի Նախահայաստան էին ձգվում, որտեղ բնակվում էր Հայաստանի նախահնդեվրոպական ցեղախումբը, ինչպես նաև դեպի Ասորիքի  արևելք, որտեղ բնակվողների լեզուները մի լեզվաընտանիքի են պատկանել: Այսքանին ես կարող եմ ավելացնել, որ էլամացիների լեզուն ևս սրանց շարքին է դասվում, և դրա գոյականը վստահորեն եզրակացնել է տալիս, որ  հին սեռական վերջավորություն *e*–ն և հայցական *n*–ն, որ թերևս տարբերակներով (*i*–ն, *e*–ի և *ni*–ն *n*–ի փոխարեն)

հանդիպում են վերոհիշյալ լեզուներում, գտնում ենք առաջին երեքի մեջ: Դրան միակ հակասող փաստը գտնում ենք միայն մի փոթորկի աստծու` *Tešupa-Teišeba*-ի անվան մեջ, այսինքն՝ թերևս *Tesub*[u], լսած *Tes(š)ub-* ի համար, *Tešub(p)-Teišeba* Միտանիում (շուրջ *1400* թ. մ.թ.ա., տե՛ս ABEL und WINKLER–ի, *El Amarna No. 27, Obv. I, 24 և 84);* *ʾI(?T?)зrзtiʾ*–ում (*MASPERO*-ի *Recueil 13, 154,* տող *5),* մոտավորապես արտասանվում է *(T)ar-, (T)er* կամ (*T)or-Tes(š)ub*[u]*),* որ *Ḫtз-* ի թագավոր *Ḫtзsзrз*-ի սուրհանդակի անունն էր, որին հանդիպում ենք նաև *Kз-dз-ωз-dз-nз*-ում՝ *Ḫtз*-ի թագուհու հայրենիքում, հավանաբար *Kommagene*-ում (շուրջ 1300): Այս անվանը հանդիպում ենք նաև Տիգրիսի վերին հոսանքում՝ երեք թագավորների անուններում *Tiglatpilesere I*–ի ժամանակ, շուրջ *1100, Kili-Tešub(p), Kali-Tešub(p)* և *Šadi-Tešub(p)(Prisma Tiglatpilesere I, Col. II, 25* և *24),* ինչպես նաև Հայաստանում *(Jour. of the R. As. Soc. N.S. XIV, p. 516, տող 15)* առաջին նախաքրիստոնեական հապարամյակի կեսերին; *Bag* – (գուցե *Ḫu-*) *Tesub(p)*-ը մի մարդու անվան է կապվում, որը հավանաբար ծագում է Արևելյան Ասորիքից *(K 1067* և այլ բնագրերում*); Sū*-ի երկրից՝ Բաբելոնից դեպի արևելք (*K 2100*–ի բնագրում): Այս բոլոր *Tešub(p)*-ների հետ միացած անձնանունները, որոնցից մեկ առնվազն վեցն են ավանդվել, վերոհիշյալ հինգին ավելացնելով *Ar – Tešub(p)* (համեմատիր վերը) անունը *1400*–ին ապրող մի միթթանացու հետ *(ABEL- WINKLER, 1. c. No. 27, Rev. Col. II (p. 31,* տող *36)*, առաջացել է աստծու անունը, որը, ինչպես այստեղ նկատել ենք , երկրորդ տեղում է…

Համառոտակի ասենք, որ *"Tesup- ազգերի"* լեզուներում՝ *š*–ն կամ *še*–ն, ուղղականի վերջածանց լինելով, երկրանունների վերջում ևս հայտնվում է (ինչպես *parsuaš*–ը Սարգոնի *Prunk*–ի արձանագրությունները, *Salamanassar II obelisk 120* -ի *parsua*–ի դիմաց), ինչպես *Hate*–ի տարածքի մի շարք տեղանուններում՝ *Karkemiš, Markaš, Urtaš, (Melitene*-ում, *Salamanassar),* որոնցից առաջինը հաթերենում իր *š*–ն սեռական հոլովում կորցնում է, նույնը և ուղղականում. այնուամենայնիվ հավանաբար այս *š*–ն համապատասխանել է հին հաթերենի *s*–ին և միայն այդտեղ է, բատ բոլոր տվյալների, եգիպտացիների կողմից *s*–ի վերափոխվել (տե՛ս վերը), մինչդեռ

*Karkamiš*-ը միշտ š–ով է գրվել, այնպես որ այս մոտեցումը անհավանական է, և ըստ այդմ՝ մասնավորապես Հյուսիսային Սիրիայում, եթե ոչ *Karkamiš*-ի տարածքում, այս երկրամասի անվանումը *Tešup*-ի լեզուներում *š*– վերջավորությամբ է հանդես գալիս, ուստի գտնում ենք, որ այս վերջավորությունը *Karkamiš*–ի անվան մեջ հենց այս ազգաբնակչությունից է ծագում:

Շրջապատում՝ Փոքր Ասիայի տարածքում և ավելի արևմուտքում (նաև Սիրիայում, սակայն ոչ *Barbalissus*–ում, o.h. *Beth-Balis*–ում) գտնում ենք տեղանուններ՝ *s* վերջավորությամբ: Կարելի է ենթադրել, որ դիցանունների հետ կապված այս վերջավորությունները *Tešup*–ի ազգաբնակչությունը վստահաբար դասել է անձնանունների երկրորդ տեղում, ուստի հավանական է այն դրդշումը, որ ոչ հաթական Փոքր Ասիայի և Հյուսիսային Սիրիայի բնակչությունը, որ լուկիներին են պատկանում և հետ են դառնում *Tarhudapi*–ին, տարբեր են “*Tešup* ազգից” և ըստ այդմ՝ հաթերը ներխուժել էին ոչ միայն Սիրիայի, այլև Փոքր Ասիայի ևս երկու ցեղերի բնակավայրերը: Նրանց լեզուները միմյանց ազգակից չեն և շփման ոչ մի եզր չունեն, ինչը երևում է նրանց լեզվական կոթողներից:

Սեռական վերջավորություն *hä*–ն ներկայացնում է h–ն լուկիերենում և, ըստ Kretschmer–ի, մոտավորապես *öhö* կամ *ö*-ն՝ քարիերենում (*Griech. Sprache p. 282 f.)*: Սրա վրա պետք է մի մեծ հարցական նշան դնել, քանի որ այս վերջավորությունը, որը կարելի է թերևս որպես սեռական վերջավորություն e(i) նախահայկականին կցել, լուկիական և “*Tešup* ազգերի” լեզուների հետ ընդհանրություն ունեցող չի երևում (համեմատիր *ZDMG, 48, 430, (434) ff.)*: Թերևս եթե ընդունելու լինենք σ(σ)– վերջավորությունը որպես Փոքր Ասիայում և դրա արևմուտքում տարածված “*Tešup* ազգերի” իրական հին ուղղականի վերջավորություն, այդ դեպքում պիտի որ այդտեղի բոլոր տեղանունները, որ այդ վերջավորությունը չունեն, բնականաբար ուրիշ արմատներից ծագած համարվեն: Ահա երբ գոյություն ունի Փոքր Ասիային բնորոշ տեղանունների վերջավորություն *–νδ–α(οσ)* (Kretsch-mer, *Griech. sprache p.308 ff.*), ապա այն անունները, որ այսպիսի վերջավորություններ են ունենում, երբեք այս

ենթադրված ուղղական հոլով –σ(σ)–ն չեն ընդունում, ուստի հետևություն անելով՝ ընդունենք, որ դրանց հետ միակցված տեղանունները պիտի մի ուրիշ ցեղախմբից առաջացած լինեն, ինչպիսին են մի –σ(σ) – ով ենթադրված ցեղերը, որոնցից ծագում են անուններ, ինչպես *Tarḫundapi*-ն, և ահա Փրյուգիայում ոմն *δημος*` Թրոքոնդացիին են մատնանշում (Ramsay, Journal of Hell. Studies. VIII, 493), ինչով թերևս *Torkandu*–ի դրոշման են հասել, որը ակնառու *Tarḫu-Ταϱχυ–Τϱαχο*–ի դիցանվան հետ համատեղելի է և “ոչ հաթական” անձնանուններում գտնվում է շատ հաճախականությամբ. այդ դիցանունը *Tarḫu*-ն է *(KRETSCHMER, Griech. Sprache p. 362 ff.)*: Սակայն երբ մերժվում է այն ենթադրությունը, որ –νς- ով վերջավորվող տեղանունները հաթա–հայկական են, այն ժամանակ մի դրոշման ենք պարտավորվում հանգել, որ դրանք մի “ոչ հաթական” ազգի են պատկանում՝ նկատի առնելով լուկիացիներին, մինչդեռ –σ(σ)–ով վերջավորվող տեղանունները (ավելի հին) “*Tesup* ազգաբնակչության” լեզուներում փաստելի են, և այս բոլորը՝ թերևս շատ ճիշտ հավանականությամբ, ոչ փաստացի ենթադրությամբ, որ այս –σ(σ)–ն տեղանուններում մի հին ուղղական վերջավորություն –*š*–ին են համապատասխանում Ինչպես էլ լինի, ինչքան էլ կասկածելի թվա, այնուամենայնիվ *Hatio* հայերը բնակվել են Փոքր Ասիայում, “ոչ հաթական” լուկիացիների ազգակիցների հետ, և եթե նրանք իրենք իրենց “*Tesup* ազգերին” այնտեղ գտած լինեին, համենայնդեպս սա մնում է այնքան հաստատ, որ նրանք առնվազն Սիրիայի հյուսիսում և Հյուսիսային Սիրիայում իրենց թափառումների ընթացքում *Hate*–ում երկու ժողովուրդների հանդիպեցին՝ լուկիացիներին և նախահայերին, և շատ տարօրինակ է թվում, որ հայերենի, բացառյալ մնացած հնդեվրոպական լեզուները, բառապաշարի մեծ մասը ոչ հաթական է, և սրա պատճառը ոչ միայն հայերի բնակեցումն է ոչ հնդեվրոպական նախահայերի մեջ, այլև Փոքր Ասիայի և Տավրոսից դեպի Եփրատ տարածքի մեկ կամ երկու (եթե ոչ ավելի) ցեղերի տարատեսակ լեզվական խառնուրդն է:

Այսպիսով, մենք, մեր մութ անցյալը մոռացած, հնարավորություններից չօգտվեցինք, այնինչ հայերը հայարամյակների խորքից բերել և այս նոր ժամանակներին են հասցրել իրենց հոգևոր մշակույթը, և առեղծվածների քողը միայն

հատուկենտ փշրանքներից այստեղ և այնտեղ պատահականորեն բացվել է ու երևացել, որ սրանից հազարավոր տարիներ առաջ Փոքր Ասիայում ու Սիրիայում գտնված գաղափարագրերը նրանք են հորինել և գործածել և դրանցով հնամյա հնդեվրոպական գրավոր կոթողները հայերենով արձանագրել են՝ մեզ հասցնելու չխեղաթյուրված հայոց պատմությունը, առնվազն Ք.ա. 500, եթե ոչ հազարավոր տարիներ առաջ վաղ անցյալից, ինչը մենք չէինք կարող հուսալ: Այս փառապանծ ժամանակների պատմությունը, երբ Հյուսիսային Սիրիայի ու Փոքր Ասիայի տարբեր ազգերից կազմված պետությունը իր մեջ ի մի էր բերում, անմերժելի կերպով և անբեկանելիորեն վերաբերում է մեր հետապնդություններին, և այժմյան ճնշված հայկական ազգը, անցյալի սքանչանքով իր անկոտրում, բայց անհասանելի հույսով պիտի մի հոյակապ ապագա կերտի: Մենք վերը արդեն ապացուցել ենք, որ հաթերի անունը, լեզուն և կրոնը հայերի անուններում, լեզվում և նախաքրիստոնեական կրոնում գտել են իրենց ճանաչելի շարունակությունը: Բայց, այնուամենայնիվ, հայերի մասին ունեցած մեր գիտելիքներով հանդերձ, դեռ առկախ է մնում նրանց վաղեմի պատմության առթիվ եզրակացություններ անելու կամ այն մեր պատմության կեղծարարությամբ քողարկված լինելու հարցը:

Հասկանալի է, այսպիսի փնտրտուքների ու հետապնդությունների միայն չնչին սպասելիքներով կարող ենք մոտենալ, բայց անկախ ամեն ինչից՝ պիտի գոհ լինենք *միայն այն համզամանքով, որ* հայերի գոյության և բնակվելու հարցը »հաթական« արձանագրությունների տարածքում հավաստվի:

Ժամանակն է հայերի ավանդությունները քննարկելու: *Mar Aba*-ն, այսինքն՝ *Mar Abas Katina* կեղծանունով Ագաթանգեղոսը (տես *Gelzer*, վերոհիշյալ տեղում, *Ber. D. k. Sachs. Ges. D. w.*, դեկտեմբեր *7, 1895, p. 125 ff*) պատմում է մի կռվի մասին, որտեղ Հայկը՝ հայերի անվանակոչման հերոսը, *Bel*–ի (որը Բաբելոնի թագավորն էր) և հայերի միջև պատերազմում սկզբում նրանից հեռանում և վերջում նրան սպանում է՝ տիրանալով *Ararad* երկրին:

Այս պատմությունն առասպելական է, բայց, դրանով հանդերձ, արդյո՞ք սա մի պատմական իրադարձության կամ իրողության չի հակասում. *Gelzer*–ը (*1. c. p. 125*) հակված է ընդունելու, որ այն իր մեջ պարունակում է մի բացահայտ հիշողություն, մի հպոր, արմատական, թշնամաբար հակադրեցություն սիրիական մշակույթի և կրոնի նկատմամբ, քանի որ Բելը հայերի համար սիրիացիների աստվածն է նշանակում, ինչպես վերը տեսանք, *Baršam-Baršamin* (*Gelzer 1. c. 120)*-ի պարագայում: Առաջավոր Ասիայի խոշոր վաճառականության կենտրոն Palmyra–ում, որտեղ վստահաբար բաբելոնացիները մեծ թիվ էին կազմում, փոխանցի են ենթարկվում նրանք, ովքեր բաբելական *Bel*–ի դեմ են ելնում, և քանի որ սիրիական աստված *Bel*–ը ոչ մի տեղ Սիրիայում որպես այդպիսին փաստված չէ, ուրեմն այս պատմությունը ինչ-որ ձևով իրականում տապալված է, այնպես որ պիտի դրա բացատրությունը բաբելոնական *Bel*–ով լուսաբանենք:

Ըստ դրա՝ հայերը իրենց պատմության ընթացքում պիտի մի տեսակ թշնամական շփման մեջ եղած լինեին բաբելոնացիների հետ. և այս հարցը այդ առիթով հայկական առասպելում ավանդել է մեզ մի հենակետ, որ նրանք մի ժամանակ բնակված են եղել բաբելոնական սահմաններում կամ նրանց պետական տարածքում, ինչպես թերևս հաթերը: Սա հնարավոր է, քանի որ մենք հաթերի և բաբելոնացիների կռվից ոչինչ չգիտենք, չնայած դա չի նշանակում, որ մի պատերազմ նրանց մեջ գոյություն չի ունեցել, և կարող ենք դեռ ավելի առաջ գնալ ու փաստել, որ հայկական առասպելում ասորիներն ու բաբելոնացիները միահյուսված են եղել, և Հայկի ու Բելի կռվի ընթացքի մեջ հաթերի պատմությունը Հյուսիսային Սիրիայում այդ առասպելի մեջ արտացոլված ենք տեսնում: Հայկի սկզբնական ետ նահանջը համապատասխանում է հաթերի նվաճմանը ասորիների կողմից, ինչպես և նրանց հաղթանակը *Bel*–ի նկատմամբ և հաթա–կիլիկիական տիրապետության վերականգ–նումը *Sy(u)ennesise*–ի միջոցով Հյուսիսային Սիրիայում և ավելի հյուսիսում, սակայն այստեղ փաստարկները խճճվում են: Առայժմ մի պահ կանգ առնենք: Ենթադրութ-յունները ճիշտ են կամ ոչ ճիշտ, այնպես որ ունենք այն, ինչ ունենք:

Ավանդությունը ոչ վստահելի ու մոլորացնող է, ու երբ դա մաքրում և իրեն ապառում է, այդտեղ առաջ է գալիս լեզուն՝ համախակիորեն որպես մի բարձրաձայն վկա, և երևում է, որ այս դեպքում նույնպես մեկ սատարում է։ Այն, ինչ այստեղ քննարկում ենք, արդեն մեծ մասամբ *Zeitschr. d. D. Morg. Ges. 48, 461 ff*-ում լուսաբանել եմ, և անօգուտ չի լինի այստեղ մեկ անգամ ևս ավելի խոհեմությամբ ու շրջահայեցութ–յամբ դա կրկնել։

Հայերենում շումերական և սեմական լեզուների մի շարք բառեր նոր բաբելոնյաներենով են հնչում կամ երևում, ուստի թվում է, թե հայերը նախքան իրենց այժմյան տեղում հաստատվելը՝ Առաջավոր Ասիայում կամ նրանից ոչ հեռու, թերևս սեմական տարածքի մոտակայքում են բնակված եղել, ինչպես հաթերը՝ Հյուսիսային Սիրիայում և ավելի հյուսիսում։

Շումերների *gu(o)š(š)ki-n* = »ոսկի«–ն հիշեցնում է, ինչպես *DE LAGRANDE*–ն էր առաջինը նկատել, հայերեն *osk-i* = ոսկի–ին; շումերերեն *ana, am(a)* կամ *em(a), nagga*-ն *niggi* հիմնական ձևով *an(a)ga* = »անագ, կլայեկ«, հայերենում *anag* = »անագ, կլայեկ«: Շումերերենի *anš(š)u* = »էշ«–ը կարող է հայերեն *es* = »էշ«–ին ցեղակից լինել, անգամ եթե, ինչպես մենք վերը ենթադրել ենք, այն ավելի հին *ensu*–ին է վերադառնում. առաջին համեմատությամբ ֆիններեն *waski* = »պղինձ«–ը նույն հաջողությամբ մի հիմնական ձևով *wo(a)ski*–ին է վերաբերում, սակայն սա չի կարող, ըստ մեզ, հայերենի հնչյունային կանոնների համաձայն՝ *oski* դառնալ, նույնը և շումերերենի *gu(o)š(š)ki*–ն, և ըստ այդմ՝ շումերերեն *gu(o)š(š)ki* –ն և հայերեն *oski*–ն իրար հետ ուղղակի չեն կապվում։ Այսպիսով, հայերեն *oski*–ի պատմությունը խոր մթության մեջ է մնում, և այդ բառը այս հետապնդության համար հետաքրքրություն չի ներկայացնում. ինչ մնում է, այն բանին, որ *i*–ն *oski*–ում նույն *i*–ն է, ինչ *waski* և *guski* –ում և ոչ այն երկրորդ *i*–ն *gini*–ում = »զինի«, որ մի նոր հայկական վերջածանց է՝ = գաղափարազիր *ios*–ին, ուրեմն պիտի *oski*–ն հայերենում համեմատաբար նոր լինի և որևէ հանգամանքում չի կարող վստահաբար արդեն շուրջ 2500–ին, եթե ոչ ավելի վաղ բնաջնջված և վերացած շումերներից փոխառված լինել։

Մինչդեռ հին հայերենի սուր հնչող բառավերջի *i*–ն, որ հնդ–գերմանական *is*–ին է վերադառնում Ք.ա. շուրջ 600–ին, և հաթերի արձանագրություններում դեռ երևում է, հայերենից արդեն դուրս է մղվել:

Նույնը անագ–ի առթիվ կարելի է ասել: Մենք կանխատեսել էինք մեր՝ վերը ներկայացրած քննարկումների հետևությունից, որ պայթական ձայնեղ բաղաձայնի տեղաշարժը դեպի անձայն վերջնահնչյուն հայերենում առաջին անգամ նախաքրիս–տոնեական դարի առաջին կեսերին և հավանաբար մասամբ դեռ ավելի ուշ է կայացել,Այնուամենայնիվ իրականում անհավանական է թվում, որ դա արդեն *2500*–ին Բ.ա. կամ ավելի շուտ տեղի ունեցած լինի. և համաձայն դրան՝ *anag*–ը հայերենում հակադրվում է շումերական *an(a)g(a)*–ին, քանի որ ան(ա)գ(ա)–ն գ–ով և ոչ թե թերևս գի–ով է գրվում, ինչպես իր տարբերակները և ենթադրաբար դրանից ճյուղավորված սեմական բառերը: *anāku* (*ասոր.*), *ānkhā* (*սիր.*), *anāk* (*եբր.*), *ānukun* (*արաբ.*) *nā*ʾ*c- k* (եթովպ.)–ը ցույց են տալիս, որ դժվար թե այդ բառը շումերացիներից ծագած լիներ: Դրա փոխարեն ավելի ընդունելի է այն վարկածը, որ ուրիշ և հակառակ ուղղությամբ է դա պատահել կամ թերևս ոչ հակառակը, քանի որ հայերեն *anag*–ը կարող էր *anagh-is* կամ *anah-os*–ին վերադառնալ, որը շումերները կարող էին որպես *anag* են փոխառած լինել: Բայց այս պարագայում ևս կարիք չկա, որ մի բառ ուղղակի ուրիշների հետ կապակցվի, և դրանով այս համեմատության նշանակությունը մեր համար շատ հիմնավոր վերացված է:

Այս կասկածելի և վարկածային *eš = anš(ś)u* համեմատության հետ մենք բնականաբար չպիտի ոչ մի կերպ գործ ունենանք, քանզի դա ավելի իմաստավոր չէ, քան նախկինում քննված առանձին ինքնին վերցրած այլ համեմատություններ, որոնց մենք արդեն անդրադարձել ենք:

Եբրայերեն אגוז (*ĕgōz*) »նուշ«–ը հայերեն *engoiz* = »նուշ« –ի կողքին մի բան չի փաստում, քանի որ այս երկու բառերը Փոքր Ասիայի կամ Հայաստանի տեղացիների ոչ հնդգերմանական բառերին կարող են համապատասխանել՝ նկատի ունենալով, որ հայերը բոլորից առաջ էին Հայաստանում հաստնվել:

Նույնը վերաբերում է հայերեն *gini*–ի բառին, որն առաջացել է հին *weni*–ից, այսինքն՝ *wen* = ավելի հին *wain* կամ *woin +i* (*i*–ն *ios*–ից), ինչպես հայտնի *οινος*-ը՝ *Foinos*-ից (դրանից էլ՝ *γοῖνος, ըստ* Hesychius-ի), լատիներեն *vinum*-ը՝ *voinom*–ից (ալբաներեն *vene*)Շատ սեմական լեզուներում մի նախնական *wainun* կա, եթովպա–կան *wain*–ը կարող է արաբերենից փոխառված լինել, և ասորերեն *inu*–ն իր *i*–ով, որ ավելի հին *ai*–ին կարող է համապատասխանել, խոսում է մի համասեմական բառ *wainu*–ի մասին, որն ասորերենում *inu* պիտի դառնար:

Բայց հնարավոր է, որ այդ բառը համեմատաբար երտասարդ է, և զրեթե ոչ սեմական մի *wen* կամ *win*–ի է վերադառնում, որի *w*–ն ասորերենի բառասկզբին հարմար չէ, հետևաբար այդ լեզվից կարող էր դուրս մղված լինել: Սակայն անգամ եթե այն, կրկին ըստ տիրապետող կարծիքի, վաղեմի կերպարին համահունչ լիներ, *wen*–ը կամ *wein*ը–ը հունարենում որպես *Ϝοῖνος* չի երևացել: Դրան հակառակ՝ ոչ սեմական *woin*–ը պիտի սեմական լեզուներում որպես *wainu* ընդունված լիներ, քանզի այստեղ *ŏi* ձայնակապակցություն չի ճանաչվում, և »գինի« բառը, ըստ երևույթին, մի փոխառություն պիտի լինի այս լեզուներում, Կովկասի արևմուտքում և հարավում այն գոյություն ունի, և հավանական է, որ սեմական լեզուներին հյուսիսից հասած լինի, նույնն էլ կարելի է հայերեն գինի–ին վերաբերել. թերևս հնարավոր է, որ հայերը այդ բառը *woin* ձևով առաջինը Հայաստանից կամ նրա մոտակայքից "վերցրած լինեն"Վրացերենում և կովկասյան մի քանի ուրիշ լեզուներում, որոնք հայերենից են արմատավորվել, »գինի« բառը հնչում է որպես *(gʿwino),* և հնարավոր է, որ այդտեղ, ըստ հայերենի հնչյունափոխության, *oi*–ը *e* է դարձել, և դա կատարվել է ոչ թե ցեղախմբերի շարժի ժամանակ , այլ միգուցե ավելի ուշ՝ փոխառության միջոցով, և եթե այդպես է, համենայնդեպս այս բառը ոչ մի որոշիչ *նշանակություն* չի կարող ունենալ մեզ համար:

Հույները, հռոմեացիները, ինչպես և եբրայեցիներն ու արամեացիները հարճի համար մի բառ են ունեցել՝ *παλλαχιη, παλλαχισ, παλλαξ (pellex),* פ(י)לגש (pi(i)lageš, pillageš, ավելի հին *pillagš*-ի համար և գուցե *pallagš;* և פ(י)לקחא*(pi(?)llakta),*

ենթադրաբար ավելի հին *pillakta*-ից հունարեն *παλλαχιη, παλλαχισ, παλλαξ*–ը, այնուամենայնիվ փաստում է, որ հույները եբրայերեն *š*–ի և արամեական *t*–ի համար մի համապատասխան բառի անվանական ու թերևս մի հատուկ հոլովային վերջավորություն են տեսել, և հավանաբար արամեական *t*–ն ու եբրայերեն *š*–ն պուզահեռ չեն եղել, այլ արամեական բառը, *pillak*–ի մի տարբերակն ու ճյուղավորումը լինելով, իգական վերջածանց *t(a)*–ով է վերջավորված: Ավելին, ուղղական վերջածանց *š*–ն այն ազգերի լեզուներին է պատկանում, որոնք սեմական տարածքից դեպի հյուսիս ու արևելքում են խոսվելիս եղել, ըստ ստույգ տեղեկության, նաև ենթադրաբար, դրանք Փոքր Ասիայի լեզուներն են: Այս բառի արմատը *pillak(g)*-ից լինելու դեպքում, ինչպես EWALD–ն է առաջինը նկատել (*Zeitschr. d. D. Morg. Ges*. XIII, 314 *anm*), հայերենի *hartś* = »հարճ« բառը վերոհիշյալ բառերի հետ կապակցություն կարող է ունենալ: Նշենք, որ բառասկզբի *p*–ն հայերենում *h*–ի է վերածվում, *l*–ն *r*–ով կարող է փոխարինվել, վաղեմի ձայնավորը բառավերջի վանկում, ըստ հայերենի հնչյունային կանոնների՝ դուրս է մղվում և հայերեն *tś*–ն k–ի է հետադարձ լինում (HÜBSCHMANN, *Arm. Studien I, I, 66)*, ինչպես հայերեն *hartś*–ը՝ *palak*–ին կամ *parak*–ին: Այսպիսով, ենթադրվում է, որ, ըստ EWALD–ի, իրականում մի համընկնում կարելի է ընդունել פילגש և այլ բառերի և *hartś*–ի մեջ, և դրանից երևում է (և այդ փաստն ապացուցվել է), որ հայերը մի ժամանակ այդ տարածքում են բնակված եղել և եբրայեցիների և արամեացիների բնակատեղիին հարևան են եղել, քանզի պարտադիր չէ, որ *hartś* և այլ բարդ բառարմատների կիրառումը Հյուսիսային Սիրիայում և Փոքր Ասիայում սահմանափակված լիներ: Հյուսիսային սիրիացիների և ենթադրաբար փոքրասիացիների նախահայ ցեղերի լեզվացեղակիցները՝ հնդեվրոպական հայերի նախնիները, հնարավոր է՝ այնտեղ ներկա եղած լինեին, այնպես որ հայերը Հայաստան մուտք գործելիս այս բառերը փոխառմամբ յուրացրած կլինեին (դրանից բացի՝ *hartś* բառը այլևս ոչ մի ուրիշ նշանակություն չունի):

Ավելի կարևոր ու ցայտունը երկու ասորա–բաբելոնական բառեր են, որ հատկապես բաբելոներենին համապատասխանող են թվում՝ *knik*ʿ= »կնիք« և *bur* =

»գիր«. ասորերենում դրանց համապատասխանում են *Kunukku* (DE LAGRANDE) և *pūlu,* որոնց մենք, ինչպես *Zeitschr. f. Assyr. VIII, 376 f.*-ում նկատել եմ, համարել եմ պատահականության մի արտասովոր խաղ: Այս երկու ասորական նախահայկական բառերը *Sarduriš*–ի արձանագրություններում պիտի հայերենում որպես *K՝nuk՝* և այլն և *hul* կամ *hur(r)* երևային, որոնց թերևս *Knik՝*–ը և *bur*–ը չպիտի համապատասխանեն: Բայց դա այնքան ճիշտ է, ինչքան ասորա–բաբելոններեն *duppu* (կամ *tuppu?*), ինչպես էլամերեն *Tip-pi(e), Ti-ib-ba* և *Ti-ib-be,* որ միզուցե արտասանվում էր *dipi(e)* և *dipa* (*Wiener Zeitschr. f. kunde d. Morg. VI, 218 f; Zeitschr. f. Assyr. VI, 172 f.),* և պարսկերեն *dip(i)* = »գիր«, »արձանագրություն«ը, որ ցույց է տալիս, որ ավելի ուշ բաբելոններենում պիտի *dip(i)*-ի փոխված լիներ, այնպես որ երկրորդ *u*–ն (առաջինը ևս) *kunukku*–ի *i*–ին անցնելիս դուրս շպրտված պիտի լիներ. և *p*–ն ավելի ուշ բաբելոններենում մեծ մասամբ ավելի շատ ծավալով փոխված կլիներ *b*–ի, այսինքն՝ հին *pūlu*–ից *bulu* դարձած լիներ. այս բառի *l*–ն չի խոչընդոտում հայերեն *bur*–ի հետ միատեղմանը: Քանի որ ասորիներն ունեն, եթե ոչ որևէ ցեղաբանական, *Tabalu (Tābālu?)* - »չոր զետին« բառը՝ մի ազգի ապրեցությամբ, որին հույները *Τιβαρ–η(α)νοί* էին անվանում, հռոմեացիները՝ *Tibar-ani*, *Tabal՝ l*–ով; հայերեն *hartś*–ը *r*–ով է համապատասխանում դրան թերևս. ենթադրաբար հունարեն παλλαχη և այլն, և հայերեն *Baršamin*–ը ուղղակի սիրիական *B՝alšamin*-ին է հետ դառնում. վերջապես զուցե հնարավոր է, որ հայերեն *Mtr-u-k* = »մորուկ«–ը ավելի հին *Mutal, Mudal*-ին է համապատասխանել: Այսպիսով, ո՞չ կարող ենք և ո՞չ էլ ուզում ենք *pūlu-būlu = bur-* ի համեմատությունից մի եզրակացության գալ:

Վստահաբար երևում է, որ մի կապակցություն կա հայերեն կնիքի և մի նախապայման բաբելոնական *kunukku* կամ *kinikku*–ի միջև, և քանի որ արամեերում այդպիսի մի բառ չի գտնվում, շատ հասկանալի է դառնում ուղղակի փոխառության առթիվ մտածել, և հայերեն բառի մեջ մի վկայություն տեսնել ժամանակին հայերի բնակության մասին Բաբելոնի քաղաքակրթության շրջանում և Հյուսիսային Սիրիայում ու դրա հյուսիսում: Միայն թե վստահությամբ չի կարելի պնդել, քանի որ

կարելի է նաև, օրինակի համար, այս բառը Հայաստանի հարավ–արևելքում ընկած բնակավայրերից Հայաստան հասած լինի:

Հավանական է, որ հայերեն *šar* = 3600 = բաբելոներեն *šar*-- ավելի հին աստրական *šar* և ավելի նոր *sar* հունարեն *σαρος*–ը փաստարկության կարողություն ունենա:

Հայերեն այլ բառերի՝ ասորա–բաբելոնականից փոխառված լինելու վարկածը չի հաստատվում: *Zeitschr. d. D. Morg. Ges.*-ում հաշվարկել եմ (և սա հատուկ ուշադրության է արժանի), որ հայերեն *Kupr* =»կուպր«–ը իր *k*–ի, ինչպես և իր *p*–ի պատճառով ասորերեն כפרא – *Kafrā* - ին չի վերադառնում, քանի որ *p*–ն երբեք չի հնչյունափոխվում, իսկ սիրիական *f*–ն ձայնավորից հետո հայերեն *p*–ին է համապատասխանում. սիրիական *kufra*–ն = ասորա– բաբելոնական *kupra*-ին, ինչպես եբրայերենի כפר – *Kōfer*-ը անկասկած փոխառություն է ասորա–բաբելոնականից: Հիմա ավելի հասկանալի է դառնում դժվարությունը հնչյունային այն վարկածի, որպես թե փոխառություն է կատարվել հայերեն *kupr*–ից և հենց այդ պատճառով դա պիտի մի կողմ թողնել կամ ժխտել: Բայց դա էլ մեկ շատ չի օգնի. առավել ևս ասորա–բաբելական *kupra*–ն հայերին հենց Հայաստանում կարող է հասած լինել:

Վերջապես հնարավոր է, որ *Asor*–ը հայերեն *Asor-i* = »ասորի« ձևով հունարեն *Ἀσσυρ–ιος*– ի փոխարեն վերադարձած լինի, դեռ ավելին՝ սիրիական *Ator* կամ աստրական *Assūr*-ը և ավելի հին *Aššūr*-ը »Ասորիք«–ում է արտացոլված, որը գործածական է եղել, երբ ասորիները դեռ տիրում էին Սիրիային: Այդ դեպքում որպես հակադրություն պիտի ասել, որ երևում է, որ դա մի ուժեղ փաստարկ է այն հարցի կապակցությամբ, որ հայերը դեռ աստրական պետության ծաղկուն ժամանակ, դեռ նախքան իրենց մուտքը Հայաստան բնակված են եղել Ասորեստանի մոտակայքում, եթե հաշվի չառնենք այն հանգամանքը, որ վերոնշյալ բառը նախահայերից կարող էր փոխառված լինել:

Այսպիսով, բոլոր հարցերը քննվել և սպառվել են, սակայն մի վստահ արդյունքի չենք կարող հասնել քննարկվող նյութի մանրիկ բեկորներով,

ընդհակառակն, երբևէ պետք չէ որպես արհամարհելի փաստաթուղթ ընկալել ու համարել բովանդակության ընդհանրությունը՝ իր վավերագրական փշրանքներով հանդերձ, որոնք հետզհետե անհետանում են։

Կարելի է առայժմ դեռ *LUSCHAN*–ի հետազոտություններից “դուրս քաղել” հայերի, փոքրասիացիների և սիրիացիների զանգատեսակի անակնկալ նմանակերպության վարկածը (տես, օ.հ. *Corrrespond blatt d.d. Anthrop. Ges. 1892, No. 9, ff),* ինչը մեր հարցին որևէ էական նշանակություն չի տալիս։ Սրանով կարելի է պարզապես փաստել, որ որևէ մի հայկական ազգություն երբևէ սերտ կապակցության մեջ է եղել Փոքր Ասիայի և Հյուսիսային Սիրիայի ժողովուրդների հետ. սրանց մարմնակազմության մեծ մասն այսօրվա հայերին է անցել, ինչի շնորհիվ մեր եզրակացությունների համար ընդունելի է համարվում այն վարկածը, որ σσ–ով անունները Փոքր Ասիայում և դրա արևմուտքում բնակվող նախահայկականին ազգակից մի ժողովրդի են մատնանշում, և մի ուղղակի կապակցություն հնդեվրոպական հայերի և Փոքր Ասիայի ու Հյուսիսային Սիրիայի ազգերի միջև *LUSCHAN*–ի հետազոտություն–ները մեզ պարտադրել չեն կարող։

Նույնչափ քիչ է ասվել, որ հաթերի դեմքի ձևը ևս ուղղակի ներկայացված է այսօրվա հայերի մեջ. հյուսիսային սեմականները նույնպես ունեն մի անձանաչելի նմանություն նրանց հետ, բայց հրեաները, սիրիացիներն ու ասորիներն այնքան քիչ հաթական են, ինչքան Նոր Զելանդիայի բնիկները՝ հրեական տիպարի համեմատ։ Ինչպե՞ս կարելի է այս նմանությունը բացատրել, արդյոք դա պատահակա՞ն է, թե՞ հինավուրց կապակցություններն են փաստում, այստեղ դրանք չենք քննարկի։ Միայն մի ենթադրություն կարծարծենք. մենք տեսանք վերը, որ գոյություն է ունեցել մի լեզվակցություն և ըստ դրա՝ ցեղակցություն (և ինչն այստեղ, ի միջայլոց, նկատելի է դառնում, զուգե սեմական ժողովուրդներին և հնդեվրոպացիներին լեզվակից), ցեղ կամ ժողովուրդ, որ հյուսիսային սեմականներին արևմուտքում ու հյուսիսի կիսաշրջանում շրջապատած են եղել, նույնը՝ արևմուտքում, որտեղ սեմականները սարերի շրջապատում բնակվել են նույն ոչ սեմականների հետ, և չի կարելի բացառել

այն ենթադրությունը, որ սրանք դեպի հյուսիս ու հյուսիս–արևելք սեմականների կողմից ետ են մղվել՝ այդ միջոցին մասամբ նրանց կողմից ուծացվելով ու նրանց իրենց դիմակերպը պարտադրելով. երբ հայերը *Hate* ներխուժեցին, խառնվեցին նրանց հետ; և այդպես հաթերի նմանատիպ մի դիմագիծ պարզացավ հյուսիսային սեմականների մոտ՝ նրանց վրա, այսպես ասած, սեմականին բնորոշ "կեռ" քիթը, բայց ուրիշ տիպարների հետ առնչվելու պարագայում քիթն ուղիղ է (տե՛ս, օ.հ. *Jerabis I, 2*): Այսօրվա Հայաստանում վերջիններիս նախնիները ո՛չ սեմական և ո՛չ հաթական ցեղերին են պատկանում, այնպես որ սա չի կարող որևէ մի կապակցություն փաստել հայերի և սեմականների միջև:

Այս բոլորից հետևություն է առաջանում, որ Փոքր Ասիայում և Հյուսիսային Սիրիայում ո՛չ նրանց ավանդություններից, ո՛չ լեզվից և ո՛չ էլ մարդաբանական իրականությունից որևէ նախապատմություն վստահաբար չի կարելի ընդունել: Առանց հաթական արձանագրությունների՝ դրանք մնում են անթափանց խավարով քողարկված, ինչպես գետնի ընդերքը: Բայց այգաբացը սկսվել է, արևը պատրաստվում է դուրս գալու, նա, անկասկած, լուսավորելու է շուրջբոլորը: Մենք արդեն տեսնում ենք կիսալույսի աղջամուղջում դեռևս անհասկանալի նշաններ ու պատկերներ, բայց այստեղ – այնտեղ ահա նշմարվում է մի սարի գագաթ՝ ոսկեշող արևի ցոլքերի տակ փայլփլելիս: Մինչ այժմ գտած արձանագրական բնագրերից դատելով՝ լիահույս ենք, որ շատ հեռու չէ այն օրը, որ հայերի հապարամյա անցյալը այնպես մանրակրկիտ, հանգամանալից ու բարեխղճորեն կլուսաբանվի, ինչպես ասորիների, բաբելոնացիների և եգիպտացիների՝ անցած դարերի մութ ու խառնաշ–փոթ պատմությունը: Չնայած *19*–րդ դարը անդրադարձել է այդ ազգերի մշակույթնե-րին՝ հնարավորինս հետազոտելով և մեկնաբանելով նրանց անլուծելի առեղծված-ները, *20*–րդ դարում կարելի է սպասել դեռ ավելիին, երբ ավելի մեծ ծավալով կուսումնասիրվի և ըստ արժանվույնս կգնահատվի հավերժությունից եկող և դեպ հավերժություն ընթացող հնդեվրոպական հայերի վաղնջական հարուստ պատմությունը…

ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

էջ 4, 6 և 26 – *Hate – Hati* երկրի համար *Hama I-III* և V (IV), տող 1-ում ենթադրաբար ներկայացվում է երկրի գաղափարագիրը որպես գոյական անուն *Ḫ(H)atio,* ինչպես որ Կիլիկիայի գաղափարագիրը գոյական անուն Կիլիկիո–ն կարող է նկարագրել, այդպիսով, գոյական անունները իրենց պատկանելություն ունեցող երկրների անուններով և պարզապես հնչյունային վերջավորություններով կարող են ածանցվել, ինչը գրի մեջ կարիք չկա նշելու. և եթե դա լիներ *Ḫ(H)atio* գոյական անունը, բոլոր արձանագրությունների հեղինակներին *Hama-Hamath*–ով կապահովեր:

էջ 6 - Կնիքի կամ Թալիսմանի մի չհրապարակված արձանագրությունում *Boghazköi*–ից (RECKENDORF-ի հաղորդմամբ) գոյություն ունի մի գաղափարագիր Կիլիկիայի համար Կարելի է դրանից հասկանալ Հյուսիսային Կապադովկիայի ավզաբնակչության հարաբերությունը Կիլիկիայի հետ: Գաղափարագիրը, դժբախտաբար, սաստիկ հնացած ու հողմահարված է, բայց իմ կարծիքով՝ ոչ լրիվ անհույս կորած, սակայն չի թվում, որ այն *Boghaz-koi*–ի մեծ արձանագրության այդ նշանին նման չէ:

էջ 7 – հավելյալ ապացուցաբեկոր *Hate–Hati*–ի (տե՛ս հետին մասը) առթիվ. կասկածելին այնտեղ անտեսվել է, այլապես WRIGHT –ի *Jerabis V* 1. c. աղյուսակ *XII* և *Jerabis VI, 1. c.* աղյուսակ *XIII* –ում և այլուր կարող էր մատնանշված լինել:

էջ 24, No 14 – արձանագրությունը թերևս ճիշտ պիտի լինի. բայց և այնպես պարունակում է նույն երկու գաղափարագիրը՝ »սորուկ«, »ծառա« և հաթերենին համապատասխանող ասորերեն *Išḫara*-ն, որոնք ավելի ուշ են հայտնաբերված, և վստահինբար պուտ կնիքներ են՝ η և ξ – ում միասին գտնվող:

էջ 26 և 59 – պատվի նշանը որպես խոսակցական գաղափարագիր է հայտնվում, ինչքան ես մինչև հիմա տեսել եմ երկուսից մինչև հինգ տեղ (*Hama I*

– *III, I; Gürün II, 2 և Bulgar-maden 3),* և ամենուր դրան հետևում է մի գաղափարագիր »մեծ«–ի համար, որ ամենայն հավանականությամբ = *Medzi* = հայերեն mets (մեծ). *Gürün II, 2-* ում դրա հետևում գտնվում են դիցապետի հայրերի կամ մայրերի գլուխները (*Ivriz I, 2* և Գրատախտակը), և իսկույն դրանից հետո տող 3–ում հետևում է շան գլուխը = *ḱ – m,* որը *Jerabis I, 3 –* ում արտահայտում է թագավորի համեմատությունը աստվածության հետ: Այս խմբի նյութը դարձած կոթող *Gürün II, 2, f* –ին հետևում է մի կետ, որը բացահայտում է աստվածների և թագավորների հարաբերությունները:

Պատվի նշանը ներկայացնում է աստվածությունները *Hama I – III* –ում, բացի շեղ, որևէ կերպ ընդգծմանը ծառայող գծիկներից՝ իրենց ձախում, և բառասկզբից և բառավերջից՝ իրենց ներքևում, որոնցից վերջինը՝ *Hama*–ում կամ միայն գաղափարագրի վերում և ներքևում: Դրանից ես կցանկանայի ենթադրել, որ արտաբերական գաղափարագիր ծառայող պատվի նշանը, առնվազն *Gürün II, 2* և *Hama I – III, 1* –ում մի աստվածություն՝ թերևս »մեծն«–ի հետ կապակցությամբ, հատկապես *Gürün II, 2*-ում դրան հետևող անունով կոչված աստվածությունը, նկարագրված են որպես անվանապես դիցապետի հայր և մայր, որոնք նույնպես կոչվում են »(ը) մեծն ?«. Հիմա այս պատվի նշանը գտնվում է գաղափարագրի վերևում՝ որպես բացառապես մի համր որոշիչ կամ հնչյունային գրավոր մի արտահայտություն:

1) – »աստված« (*Gürün I, 4; II, I* + 6); 2) »թագավոր« = *dsari(o) (Fraktin*, *Boghazköi*, *Kölitolu 2); 3)*»թագավոր«, »իշխան« = *arwa-( Gürün II, 2); 4) »թագու–հի« (Jerabis I, 2* և *5; III, 3; Fraktin); 5)* »տեր« (Կնիք μ); 6) »մայր« *(Fraktin)* և 7) *ṕá ṕá(?),* այսինքն՝ »հայր« (պապա) ( ? *Ivriz I, I*). այս բոլոր տեղերում, բացի *Boghazkoi-* ի և *Kolitolu-* ի արձանագրություններում գտնվողներից, անկասկած գործ ունենք աստվածության հետ; համենայնդեպս »թագավորի« գաղափարա–գիրը՝ պատվի նշանով, *Boghazkoi-* ում նկարագրում է վստահաբար մի մարդկային թագավորի *Boghazkoi*-ից, այնպես որ կարելի է նրան որպես

»աստված« բնութագրել, և այնուամենայնիվ *Boghazkoi-* ի թագավորը որպես աստված է արժեքավորվում: Դրանից կարելի է եզրակացնել, որ, այսպես ասած, համր պատվո նշանը մի որոշիչ է »աստվածային պատվի« համար. և այդպիսով, հնչյունային պատվի նշանը ենթադրաբար պիտի մի աստվածութ– յուն նշանակի… Այս երկու կուզադրված դրույթներից կարելի է համոզիչ կերպով եզրակացնել, որ դրանցից բխող արդյունքները միմյանց փոխադարձ հաստատում են. ըստ այդմ՝ *Hama I – III, 1*-ում »ես եմ« –ին հաջորդող թագավորների համեմատությունը դիցապետի հետ հայր կամ մայր է նշանակում:

Մի ուրիշ »պատվի նշան« կրող գաղափարագիր կարող է *Gürün I, 1*-ում գոյություն ունենալ, և ըստ վերոհիշյալի՝ պիտի որ դրանով մի աստվածություն նկարագրված լինի *Hama V, 4* և *5*-ում նույն նշանը, որ *Hama I – III, 1*-ում թագավորների համեմատությունը դրևէ մի աստվածության է ներկայացնում, միգուցե նույն բառի համար՝ *(-) ḱ-m(-),* որ *Jerabis I, 3* և *Gürün II, 3*-ում թագավորների համեմատությունը այս աստվածությանը, անգամ նույնությամբ *Hama V, 4 9* 5–ում որպես *m*–ին հետևող հնչյունային լրացուցիչ կարելի է համարել (համեմատիր *Jerabis II, 2* և Մարաշ V, 2 և Աոյուծի արձանագրութ– յուն, տող 3-ի աջում):

Հիշենք և *Justi*–ի մի շատ համոզիչ ենթադրությունը, որ այս հարցին վերաբերող »աստվածային փառքի« (պայտի նման) գաղափարագիրը նախկինում երկինքն էր ներկայացնում (համեմատիր եգիպտական գաղափա– րագրի հետ »երկնքի« համար և նույնը՝ »աստված«–ի համար):

*á–í w(ṕ)-? Ś-r* –ի համար (էջ) = *á – í w(ṕ)-(a)r,* այսինքն՝ *aya watira, dsari(o)* = (այս վայրի թագավորը):

Ծանոթագրություն 8 - կարելի է (տե՛ս տառերի գրա–աղյուսակների հետևում) ենթադրել, որ ձեռքի գաղափարագիր *á- í- á*-ն WRIGHT, *1. c.* աղյուսակ *XXII*-ում նույնություն ունի դիցապետի գաղափարագրի հետ, որի առթիվ մենք արդեն Ափսեի արձանագրությունում կարդացել ենք *á- í- á,* քանի որ երբեք չի

պատահել, որ սեռական *í- á- í*-ն ներկայացներ մի ուրիշ դիցություն՝ որպես դիցապետ։Հնարավոր է, որ, հակառակ իր համախակի կապակցությանը »մեծ« բառի հետ, սա նրա իսկական անունը լինի, այդ դեպքում նրա ուղղականը և արմատը պիտի *Yo, Eo, Yaï* կամ *Eaï* հնչած լիներ: Այսքան հայկական երևացող կիլիկիական անվան տարրերը՝ *ξαρμ– α– ς-* , պարտադրում են կրկին իրենց կապակցված *Ya* դիցանվան հետ *Ια–ξαρμ– α–ς* - ում ենթադրաբար համեմատել *(Ε)ιαν–βι–ης*-ին. և իրենց արդարացնում են մի ավելի նոր *a* մի ավելի հին *o*–ի կամ ավելի նոր *Ya*-ն ավելի հին *yaï*-ի համար:

էջ *28,* ծանոթագրություն 1 – գաղափարագիր *arwa* – = *arkʿay*-ը մի ուրիշ նշան պիտի լինի: (այդ ծանոթագրությունները տես ZDMG-)

էջ *30,* ծանոթագրություն 5 – գաղափարագիր *t’í í*, այսինքն՝ *dēi = »տեր« և t’* նշանը փոխանակվում են միմյանց հետ (*Jerabis I, 2* և *Jerabis II, 3. dēi = »տիրուհի« ?* ՝տիրողուը մի սատվածության): (այդ ծանոթա. տես ZDMG-)

էջ *32* - *Jerabis*- ի արձանագրության 5-րդ տողում *śt’-r* = պավակ–ին հաջորդում է մի գաղափարագիր *ś - ṕ (á)-(í)-* ի համար, այսինքն՝ *zap*-(bh,w)a(*í)*= »սերունդ, երեխա«. այստեղ առաջանում է »պավակ–երեխա«, այսինքն՝ թոռ արտահայտությունը *Ḫ(H)(a)t’ (t’)-í* ից առաջ. կարելի է, ըստ այդմ, կարդալ մեծ հայր, ինչպես տող 4 –ից առաջ թագավորի հայրը անունով անվանված է և յուրաքանչյուրը՝ որպես բնութագրություն, պարզապես ունեցել է *Hat’io* մակդիրը, ինչպես մեծ հայրը՝ Ափսեի արձանագրությունների թագավորը:

էջ *35,* ծանոթագրություն 4 – կասկածյալ գաղափարագիրը կարող է ներկայացնել առնվազն ևս մի զոյական կամ զոյականակերտ ածական, ինչպես Առյուծի արձանագրություններ, տող 1-ում և *Maraš* V, տող 3–ում (X մի Z–ի սերունդ, այսինքն՝ պավակ)։*Bor 2*–ում թագավորը որպես դիցապետ է բնութագրվել (և *Gürün II*, 2–ում »պատվի նշանը« իր վրա՞ է կրում, այնուամենայնիվ այստեղ տեսնում ենք մի վիթխարի պատիվ): Դա ունի հնչյունային լրացուցիչ *ω(ṕ)*-ն (*Առյուծի արձանագրություններ, 1; Bor 2;*

